ՀՐԱՏ. «ԳՈՒՏՏԵՆԲԵՐԳ» Գ. ԳԱԼՍՏԵԱՆԻ № 32.

*ՄԱՍՆԱՒՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ*

# ՀԱՅՈՑ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՏԱՐՐԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ

# ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ







*ԹԻՖԼԻՍ*
ԷԼԵԿՏՐԱՇԱՐԺ ՏՊ. Օ. Ն. ԱՂԱՆԵԱՆՑԻ ՊՕԼԻՑ. 7.
*1908*

1905 թուի օգոստոսի 1-ի բարձրագոյն Հրովարտակը դեռ չէր հրատարակուել, բայց Կովկասի Փոխարքայի յուսադրական յայտարարութիւնները՝ ամենաշուտ ժամանակում մեր դպրոցների վերաբացման մասին՝ հասկանալի՛ ձգտում առաջացրին օր առաջ ձեռնարկելու դպրոցական գործի կազմակերպման նախապատրաստական գործառնութիւններին։ Յուլիսի 20-ին № 623 կոնդակով վեհափառ Կաթողիկոսը Թիֆլիսում մի Յանձնաժողով նշանակեց «վասն մշակելոյ կանոնադրութիւն (ծխական դպրոցի) և ծրագիր մի»։ Յանձնաժողովը մշակեց և արձանագրեց դպրոցական վարչական-կազմակերպչական կանոնադրութեան հիմնական կէտերը, իսկ ուսումնական ծրագրի համար որոշեց «հրաւիրել մի բազմամարդ ժողով ուսուցիչներից և ձեռնհաս անձերից և յանձնել նրան՝ ուսումնական ծրագիր կազմել, այլ և Յանձնաժողովի մշակած վարչական կանոնադրութեան սկզբունքները քննել և կարծիք յայտնել այդ մասին»։

Օգոստոսին գումարուեց Թիֆլիսում այդ ժողովը, որին հրաւիրուած էին ա) նախկին թեմական տեսուչները, բ) Ճեմարանի և թեմական դպրանոցների նախկին և ներկայ տեսուչները, գ) թեմական դպրանոցների ուսուցչական խմբերի և հոգաբարձութիւնների ներկայացուցիչները և դ) Կովկասի գլխաւոր հայաբնակ քաղաքներում գտնուած հայ ուսուցիչների և ուսուցչուհիների ներկայացուցիչները։ Այս ուսուցչական ժողովում քննեցին Յանձնաժողովի կազմած դպրոցական վար-

չական կանոնադրութեան հիմնական սկզբունքները և ապագայ ուսումնական ծրագրի ցանկալի հիմունքները— և ապա մասնագէտ անձերից մի յատուկ Մասնաժողով ընտրեց կանոնադրութեան և ծրագրի մանրամասն նախագծի մշակման համար։

Մասնաժողովը 1905 թ. սեպտեմբերի 4-ից մինչև 1906 թ. յուլիսի 15-ը 58 նիստ ունեցաւ և մշակեց մեր եկեղեցական տարրական դպրոցների վարչական կանոնադրութեան և ուսումնական ծրագրի նախագիծը։ Զանազան առարկաների ուսումնական ծրագրերը մշակելու ժամանակ Մասնաժողովի նիստերին հրաւիրուեցին մասնակցելու մի քանի մասնագէտ և փորձառու ուսուցիչներ։ Մասնաժողովի աշխատութիւնը տպագրուեց Ներսիսեան Դպրանոցի հրատարակութեամբ «Նախագիծ. կանոնադրութիւն և ծրագիր հայոց եկեղեցական տարրական դպրոցների» վերնագրով (Թիֆլիզ, Տպարան «Հերմէս» ընկ. 1906)։

Ուսումնական ծրագրի այդ նախագիծը այնուհետև քննուեց Կեդրոնական Ժողովում Էջմիածնում (նախ ժողովի դպրոցական սեկցիայի նիստերում), և մի քանի փոփոխութիւններով հաստատուեց Ռուսահայոց պատգամաւորական այդ ընդհանուր Ժողովի կողմից. ապա վաւերացուեց Ամենայն Հայոց վեհափառ Կաթողիկոսից (տես «Արարատ» պաշտօնական ամսագիրը Հայրապետական Աթոռոյ ս. Էջմիածնի, 1906, համար ը—ժա, օգոստոս—նոյեմբեր)։

Մեր տարրական դպրոցների համար պարտադիր, պաշտօնապէս ընդունուած՝ այդ Ուսումնական Ծրագիրը իւր վերջնական, պաշտօնապէս հաստատուած, բովանդակութեամբ տակաւին տպագրուած չէ։ Վերևում յիշուած Մասնաժողովի, դեռ Կեդրոնական Ժողովից առաջ տպագրուած, «Նախագիծն» էլ արդէն սպառուած է։ Օգտակար

համարեցինք սոյն մասնաւոր հրատարակութեամբ լոյս ընծայել Հայոց Եկեղեցական Տարրական Դպրոցների Ուսումնական Ծրագրի իսկական վաւերական բնագիրը, որը մեր դպրոցների իւրաքանչիւր ուսուցչի անհրաժեշտ և մշտական ուղեցոյցը պիտի լինի։ Ներկայ հրատարակութիւնը յիշեալ Նախագծի հարազատ արտատպութիւնն է այն բոլոր փոփոխութիւններով, որ կատարել են Կեդրոնական Ժողովը և Վեհափառ Կաթողիկոսը։

ՍԻՐԱԿԱՆ ՏԻԳՐԱՆԵԱՆ

*Թիֆլիզ. սեպտեմբեր. 1908։*

# ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ

## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՏԱՐՐԱԿԱՆ

## ԴՊՐՈՑՆԵՐԻ

### *ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ*

*Հանրակրթական տարրական դպրոցի նպատակը պէտք է լինի կեանքի ընդհանուր պահանջներին բաւարարութիւն տալը, ուստի այս հաստատութեանց մէջ պէտք է ներդաշնակօրէն միացած լինի մտաւոր, բարոյական և ֆիզիքական կրթութիւնը։ Այս բազմակողմանի նպատակին հասնելու համար բացի դաստիարակութեան միջոցներից դպրոցը դիմում է նաև զանազան գիտելիքների և հմտութիւնների դասաւանդութեան։ Բարոյական ոգեղէն ուժերի առատ աղբիւրներ ամբարուած են գիտելիքների և արուեստների մէջ, որոնցից ամէն մէկը այս կամ այն չափով, այս կամ այն կողմից նպաստում է բնաւորութեան զարգացման, եթէ նրանց նիւթերն ընտրուած են և աւանդւում են հոգեբանութեան պահանջների համեմատ։*

*Դպրոցը, մանաւանդ տարրական դպրոցը, գիտական շատ աննշան պաշար կարող է տալ. այս պատճառով պէտք է դասաւանդութեան նիւթերը որքան կարելի է ընտիր լինեն և լաւապէս մշակուած։ Ներկայ Ծրագրի մէջ գիտելիքներ են մտել, որ առհասարակ*

դուրս են մնացած եղել տարրական դպրոցի դասընթացքներից, օրինակ՝ ընդհանուր պատմութիւն, քաղաքացիական ուսմունք, արուեստագիտական (տեխնիքական) և քիմիական տարրական առտնին գիտելիքներ։ Այս գիտելիքները ժամանակակից պահանջներին քիչ թէ շատ բաւարարութիւն տալու համար են միացուած դասընթացքին և կամ թէ չէ համամարդկային կուլտուրական բարձրակէտերը մեր սաներին ներկայացնելու դիտաւորութեամբ։ Քանի որ տարրական դպրոցների ժամանակը շատ սուղ է և սաների մեծամասնութիւնը տնտեսական պատճառներով դասընթացքը աւարտելուց առաջ է կեանք մտնում, մենք պէտք է աշխատենք դեռահաս սերնդի մէջ ինքնակրթութեան առողջ սաղմեր դնել, անշէջ, բեղմնաւոր հարցասիրութիւն առաջացնելով։ Հետևաբար՝ աւանդելի նիւթերի ոչ թէ քանակը, այլ որակը և նրանց մնայուն արմատները պէտք է մենք մշակենք և զարգացնենք։ Իսկ այս արմատները բեղմնաւոր կլինեն միայն այն ժամանակ, երբ կապուած կլինեն մայր հողի հետ, այսինքն՝ հայրենագիտութեան հետ, ընդարձակ իմաստով։ Միւս կողմից՝ պէտք է նոյն պատճառով ամեն մի գիտելիք օրգանական կապերով միացած լինի հարևան առնչակից գիտելիքների հետ։ Այլ խօսքով՝ մենք պէտք է ձգտենք մտաւոր աշխարհի բնական կենդրոնացման, որի լաւագոյն գործօնը ուսուցիչն է։ Հնարաւոր է և աւելի կարևոր, որ, գէթ ստորին դասարաններում, իրար հետ առնչութիւն ունեցող առարկաները միևնոյն դասատուն աւանդէ։ Հարցասէր և ինքնուրոյն մարդիկ պատրաստելու համար պէտք է դպրոցը ի նկատի ունենայ մանկավարժութեան նաև մի այլ հիմնական պահանջը, որ ասում է՝ ուսուցիչը իսկապէս պէտք է ոչ թէ ուսուցանէ գիտական ճշմարտութիւնները, այլ առաջնորդէ

այդ բանում սաներին, այսինքն՝ այդ ճշմարտութիւնները գտնելու միայն ճանապարհները ցոյց տալ նրանց։ Հետևաբար, հիմնական աշխատանքը պէտք է իսկապէս դասարանում կատարւի, իսկ տնային պարապմունքները պէտք է սահմանափակւեն։ Տնային աշխատութեանց շրջանը պէտք է մտնեն դասերի աւելի կրկնողութիւն, մեքենայական վարժութիւն պահանջող տարրերը, ինչպէս նաև շարադրութիւնները և այս կամ այն որոշ տեսակի պարապմունքները։

Ֆիզիքական կրթութեան համար մարմնամարզութեան դասընթացքից զատ առաջարկւում է նաև ձեռարւեստ. բայց հանրակրթական հաստատութիւնը, ի հարկէ, արհեստաւորներ պատրաստելու նպատակ չի կարող ունենալ։ Այստեղ սաները կը սովորեն այն արհեստները և այն չափով, որ չափով որ սրանք օրգանական կապերով միացած կլինեն դասաւանդութեան այլ նիւթերի հետ։ Փայտը, խաւաքարտը (կարդօն) և մասամբ կաւը պէտք է լինեն գլխաւոր մշակման նիւթերը։ Դպրոցին վերաբերեալ պիտոյքներ պատրաստելով, աշակերտները այնքան ձեռքի և աչքի վարժութիւն ձեռք պիտի բերեն, որ ապագային, եթէ արհեստաւոր չը լինեն էլ, այդ հմտութիւնները առօրեայ կեանքում գործադրեն։ Ի նկատի պէտք է ունենալ բացի սրանից նաև տեղական պահանջները՝ այգեգործութիւն, շերամապահութիւն, մեղւաբուծութիւն, կաթնատնտեսութիւն և այլն, որոնց ընտրութիւնը վերապահւում է ամեն մի դպրոցի տեղական վարչութեանը։

Այս ծրագիրները կազմւել են անկախ այն հանգամանքներից, թէ որքան հնարաւոր կը լինի այս ամենը անմիջապէս և անթերի գործադրել։ Այս ծրագիրները արտայայտում են ժամանակիս պահանջները, որոնց ճնար եղածին չափ բաւարարութիւն է տրւել ժամա-

նակակից մանկավարժութեան ցուցմունքների համեմատ։ Եթէ ծրագիրները կազմուած լինէին այժմեան մեր ուսուցչական ոյժերը, դասագրքերը և նիւթական միջոցները հաշւի առած՝ նրանք բոլորովին թերակատար բնաւորութիւն կունենային։ Ներկայ Ծրագրի պահանջներին բաւարարութիւն տալու համար պէտք է հոգան Թեմական Դպրանոցները, ուսուցչանոցներն ու լսարանները՝ ձեռնհաս ուսուցիչներ պատրաստելով, և ինքը ժողովուրդը՝ կրթական գործը տնտեսապէս ապահովելով։

Առժամանակ կազմուած են քառամեայ և վեցամեայ դասընթացքով ծրագիրներ. սակայն այն գիւղական և քաղաքային դպրոցները, որոնք մի դասատուից աւել պահել կարող չեն, պէտք է երկամեայ դասընթացքով բաւականանան երրորդ լրացուցիչ դասարանի օժանդակութեամբ։ Իբրև անխուսափելի չարիք ընդունուած է, որ միաժամանակ 2 բաժանմունքից աւելի չի կարելի պարապեցնել միևնոյն սենեակում։ Երկամեայ ուսումը մի անօրմալ վիճակ է։ Այս թերթին լրացնելու և ուսածը կորստեան չը մատնելու համար ի նկատի է ունեցւել, որ ճաշերից յետոյ կամ երեկոյեան երկամեայ դպրոցի ուսուցիչը լրացուցիչ պարապմունքեր պէտք է ունենայ շրջանաւարտների հետ։

Ծխական դպրոցների տարրական դասընթացքի այս ծրագիրներն այն հաշւով են կազմուած, որ դպրոցական բոլոր տեսական ու գործնական պարապմունքները դասամիջոցների հետ 5 ժամւայ տևողութիւն պէտք է ունենան։ Օրական դասերի թիւը չպէտք է 5-ից անցնի, իսկ ամեն մէկի տևողութիւնը 45 րոպէ պէտքէ լինի։

Աշխատութեան և հանգստի ժամերը հետևեալ դասաւորութիւնը պէտք է ունենան։

| | | | |
|---|---|---|---|
| I. | դաս — | 45 | րոպէ. |
| | դասամիջոց | 10 | » |
| II. | դաս — | 45 | » |
| | դասամիջոց | 10 | » |
| III. | դաս — | 45 | » |
| | դասամիջոց | 10 | » |
| | մարմնամարզութիւն | 25 | » |
| | դասամիջոց | 15 | » |
| IV. | դաս — | 45 | » |
| | դասամիջոց | 10 | » |
| V. | դաս — | 45 | » |

5 ժամ ընդամենը

Որտեղ հնարաւոր է՝ ցանկալի է դասարանական պարապմունքները 2 մասի բաժանել—մի մասը՝ ճաշից առաջ, միւսը՝ յետոյ, ինչպէս որ օգտակար է համարւած ընդունել համարեա բոլոր կուլտուրական երկիրներում։ Մարմնամարզարան ունեցող դպրոցները պէտք է մարմնամարզութեան դասերը ճաշից յետոյ նշանակեն։

## ԴԱՍԵՐԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՂԻՒՍԱԿ

| Ա ռ ա ր կ ա ն ե ր | I | II | III | IV | V | VI | Շաբա-թա-կան |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1. Կրօնագիտութիւն | 2 | 2 | 2 | 2 | 2 | 2 | 12 |
| 2. Պատմութիւն | — | — | 2 | 2 | 4 | 4 | 12 |
| 3. Քաղաքացիակ. ուսմունք | — | — | — | — | — | 1 | 1 |
| 4. Աշխարհագրութիւն | — | — | 2 | 2 | 2 | 2 | 8 |
| 5. Իրագիտութիւն | 2 | 2 | — | — | — | — | 4 |
| 6. Բնական գիտութիւններ | — | — | 3 | 3 | 3 | 3 | 12 |
| 7. Առողջապահութիւն | — | — | — | — | — | 2 | 2 |
| 8. Հայոց լեզու | 6 | 6 | 5 | 5 | 5 | 4 | 31 |
| 9. Ռուսաց լեզու | — | — | 5 | 5 | 5 | 4 | 19 |
| 10. Թուաբանութիւն | 5 | 5 | 4 | 3 | 3 | 3 | 23 |
| 11. Երկրաչափական ձեւագիտութիւն | — | — | 1 | 1 | 1 | 1 | 4 |
| 12. Նկարչութիւն | 2 | 2 | 1 | 2 | 1 | 1 | 9 |
| 13. Վայելչագրութիւն | — | 1 | 1 | 1 | — | — | 3 |
| 14. Երգեցողութիւն | 2 | 2 | 2 | 2 | 2 | 1 | 11 |
| 15. Ձեռագործ / Ձեռարւեստ | 2 | 2 | 2 | 2 | 2 | 2 | 12 |
| 16. Մարմնամարզութիւն | Մարմնամարզարան ունեցող դպրոցներում իւրաքանչիւր դասարանում 2 ժամ, իսկ չունեցողներում օրական 25 րոպէ։ | | | | | | |
| Ընդամենը | 21 | 22 | 30 | 30 | 30 | 30 | 163 |

Մնացած ժամերը մինչև 30 ժամ յատկացւում են տեղական նշանակութիւն ունեցող գործնական պարապմունքներին, որոնց ընտրութիւնը վերապահւում է տեղական դպրոցական վարչութիւններին։

# I. ԿՐՕՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## Ա. ԴԱՍԱՐԱՆ. ԿՐՕՆԱԲԱՐՈՅԱԽՕՍՈՒԹԻՒՆ (շաբաթական 2 դաս).

Աղօթք. *Խաչակնքել.—Տէրունական աղօթք.* (*աշխարհաբար*) (*Ուսումնական տարւայ սկզբում զրուցատրութեան եղանակով արծարծւում են տէրունական աղօթքի մէջ պարունակւած մտքերը և ապա աւանդւում նիւթը*)։

Նոր ուխտից. *Յիսուսի երկրաւոր կեանքի համառօտ ու ամփոփ նկարագրութիւն։ 1. Ծնունդ. 2. Տաճարին ընծայումն. 3. Մկրտութիւն. 4. Ոտնալւայ. 5. Խաչելութիւն. 6. Թաղումն 7. Յարութիւն. 8. Համբարձումն։*

Մանկական հէքիաթներ (*6—10 հատ*). *բարոյախօսական առակներ և պատմւածքներ։*

## Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

### Հին ուխտից։ Նահապետներ.

ա. Աբրահամ. *1 Աստւած կանչում է Աբրահամին. 2. Աբրահամը և Ղովտը բաժանւում են. 3. Աբրահամն ազատում է Ղովտին. 4. Իսահակի ծնունդը։*

բ. Իսահակ. *5. Իսահակի ամուսնութիւնը և Աբրահամի մահը. 6. Եսաւ և Յակոբ. 7. Յակոբի խաբեբայութիւնը.*

գ. Յակոբ. *8. Յակոբի փախուստը. 9. Յակոբը Լաբանի մօտ. 10. Յակոբի դարձը Խառանից. 11. Եսաւի և Յակոբի հաշտութիւնը.* դ. Յովսէփ. *12. Յովսէփի եղբայրները և նրա վաճառումը. 13. Յովսէփը*

*Պետափրէսի տանը (առանց գայթակղութեան պատմութեան). 14. Յովսէփի բարձրանալը. 15. Յովսէփի եղբայրները գալիս են Եգիպտոս. 16. Յովսէփը յայտնւում է եղբայրներին. 17. Յակոբը Եգիպտոսում. 19. Յակոբի մահը։*

### Նոր ուխտից։

*Առակներ. 1. Կոյսերի առակը. 2. Անառակ որդու առակը. 3. Սերմնացանի առակը. 4. Քանքարների առակը։*

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

### Հին ուխտից: Առաջնորդներ.

*ա. Մովսէս. 1. Իսրայէլի նեղութիւնները Եգիպտոսում. 2. Մովսէսի ծնունդն ու ազատութիւնը 3. Մովսէսի փախուստը. 4. Աստուած կանչում է Մովսէսին. 5. Եգիպտոսից դուրս գալը. 6. Իսրայէլացիք անցնում են անապատով. 7. Սինայի օրէնսդրութիւնը. 8. Ոսկէ հորթ. 9. Լրտեսներ. 10. Մովսէսի մահը։*

*բ. Յեսու 11. Յեսուն նուաճում է Քանանը. Նրա մահը։*

### Դատաւորներ.

*ա. Գէդէօն. 12 Գէդէօնի ընտրութիւնը և մահը։*

*բ. Սամփսոն. 13 Սամփսոն և նրա մահը։*

*գ. Հեղի—Սամուէլ. 14. Հեղի և Սամուէլ։*

### Նոր ուխտից։

*Առակներ. 1. Որոմի առակը. 2. Անմիտ հարուստի առակը. 3. Թագուցեալ գանձի և մարգարտի առակները. 4. Մեծ ընթրիքի առակը։*

*Կարգ Աստուածպաշտութեան. 1. Եկեղեցու ձևը և բաժանմունքը. 2. Սրբազան անօթներ և զարդեր. 3. Զգեստներ. 4. Գրքեր։*

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաթական 2 դաս*).

### Հին ուխտից՝ Թագաւորներ.

*ա. Սաւուղ. 1. Սաւուղը դառնում է թագաւոր 2. Սաւուղի անհնազանդութիւնը 3. Դաւթի ընտրութիւնը.*

*բ. Սաւուղ և Դաւիթ. 4. Դաւիթ Սաւուղի արքունիքում. 5. Դաւիթ և Գողիաթ. 6. Սաւուղն ատում է, իսկ Դաւիթը սիրում է Յովնաթանին. 7. Դաւթի մեծահոգութիւնը. 8. Սաւուղի մահը.*

*գ. Դաւիթ. 9. Դաւիթը դառնում է թագաւոր. 10. Աբիսողոմ. 11. Դաւթի մահը։*

*դ. Սողոմոն. 12. Սողոմոնը դառնում է թագաւոր. 13. Տաճարի շինութիւնը. 14. Սողոմոնի փառքը և անկումը։*

### Թագաւորութեան բաժանումն.

*Յերոբովամ և Ռոբովամ. 15. Յերոբովամ և Ռոբովամ. 16. Եղիա և սրա մահը. 17. Իսրայէլի և Յուդայի թագաւորութեան կործանումը. 18. Բաբելոնի գերութիւնը. 19. Համառօտ հայեացք ցՔրիստոս։*

### Նոր ուխտից՝

*Առակներ. 1. Փարիսեցի և մաքսաւոր. 2. Չար ծառայի առակը. 3. Հարստի և աղքատ Ղազարոսի առակը. 4. Այգու մշակների առակը. 5. Սամարացու առակը։*

*Յովհաննէս Մկրտչի ծնունդը, քարոզութիւնը և մահը։*

*Դաւանութիւն. Հաւատամքը համառօտ բացատրութեամբ։*

*Կարգ Աստուածպաշտութեան. Ներքապետութիւն Հայաստանեաց Եկեղեցւոյ և պատարագի նշանակութիւնը։*

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Նոր-ուխտ։ Նոր ուխտն անցնել սիստեմատիկ կերպով։—Գլխաւոր ուշադրութիւնը պիտի դարձնել քրիստոնէական սկզբունքների վրա։ Հետեւեալ նիւթերից աստղանիշ հատուածները, որպէս նախորդ տարիներում անցած նիւթեր, շօշափել և լրացնել այն չափով, որչափ որ կարևոր կը լինի նոր նիւթերի հետ կապ պահպանելու և նրանց լուսաբանելու համար։

*1 Ծնունդ. *2 Տաճարին ընծայելը. 3. Արևելքի մոգերը և Եգիպտոս փախչելը։ 4. Տասներկու տարեկան Յիսուս տաճարում. *5. Յովհաննէս Մկրտչի ծնունդը. *6 Յովհաննէս Մըկրտչի քարոզութիւնը. *7. Յիսուսի մկրտութիւնը. 8. Առաքեալների մկրտութիւնը. 9. Յիսուս և մանուկներ. 10. Ո՞վ է մեծ երկնից արքայութեան մէջ. 11. Կափառնայումի հարիւրապետը. *12. Փարիսեցի և մաքսաւոր. *13. Անառակ որդու առակը. 14. Զակքէոս. *15. Ողորմած սամարացու առակը. 16. Այրի կնոջ լուման. *17. Չար ծառայի առակը. 18. Քանանացի կինը. 19. Յիսուս քարոզում է Նազարէթում. 20. Հարուստ երիտասարդը. *21. Անմիտ հարստի առակը. 22. Կորուսեալ ոչխարի և դրամի առակը. 23. Պետրոսի խոստովանութիւնը. *24. Յովհաննէսի մահը. *25. Սերմնացանի առակը. *26. Որոմի առակը. *27. Մեծ ընթրիքի առակը. *28. Այգու մշակների առակը. *29. Քանքարների առակը. *30. Մեծատան և աղքատ Ղազարոսի առակը. *31. Տասն կոյսերի առակը. 32. Վերջին դատաստան. 44. Լեռան քարոզը և ինն երանութիւն. 34. Լւացումն, կերակուր, պահք և շաբաթ. 35. Սամարացու կինը. 36 Մարիամ և Մարթա. 37. Յիսուսի թշնամիները. 38. Յիսուսի օծումը Բեթանիայում. 49. Յիսուսը մտնում է Երուսաղէմ. 40. Յիսուսը վիճաբանում է թշնամեաց

հետ. 41. Յուդայի մատնությունը. *42. Ոտնալվայ և խորհրդավոր ընթրիք. 43. Յիսուսը Գեթսեմանում. 44. Յիսուսը քահանայապետի առաջ. 45. Պետրոսի ուրացությունը. 46. Յիսուս Պիղատոսի առաջ. *47. Խաչելություն. *48. Թաղումն. 49. Յարություն. 50. Համբարձում։

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Գործք առաքելոց։

1. Հոգեգալուստ. 2. Անանիա և Սափիրա. 3. Եօթը սարկաւագների ընտրությունը և ժողով աղքատաց հոգաբարձութեան. 4. Առաքեալները բարձրագոյն ատեանի առաջ. 5. Եթովպացի ներքինին. 6. Կոռնելիոսի դարձը. 7. Սանփաննոսի մահը. 8. Սաւուղի դարձը. 9. Պօղոսը Դամասկոսում և Երուսաղէմում. 10. Առաքելական առաջին, երկրորդ և երրորդ ուղևորությունները. 11. Պօղոսի դատը. 12. Պօղոսի Հռոմ գնալը և մահը։

Շարականներ։

1. Հոփսիմեանց.—«Անձինք նուիրեալք...» և Հ. Փ. տները։

2. Յարութեան.—«Այսօր յարեաւ...» 3 տուն։

3. Ծննդեան.—«Խորհուրդ մեծ և սքանչելի...» 3 տուն։

4. Լուսաւորչի.—«Այսօր զւարճացեալ...» մի տուն։

---

# II. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Պատմութեան դասաւանդութիւնը կարևոր տեղ է բռնում ժամանակակից տարրական դպրոցի ծրագրի

մէջ իր բազմակողմանի կրթիչ նշանակութեամբ։ Պատմութեան դասաւանդութեան նպատակն է՝

ա) բարոյակրթական—արծարծել և կրթել աշակերտների մէջ հասարակական ձգտումներ, ներշնչելով երախտագիտութիւն դէպի նախնիները և պարտաճանաչութիւն դէպի ժամանակակիցներն և յետնորդները.

և բ) գործնական—ծանօթացնել շրջապատող հասարակական կազմի հետ, տալ անհրաժեշտ գիտելիքներ այդ կազմի մէջ վայելած իրաւունքների և ունեցած պարտականութիւնների մասին և ցոյց տալ ժամանակակից սերնդի աշխատանքի տեղը հանրամարդկային աշխատանքի մէջ։

Այս նպատակներին հասնելու համար պատմութեան դասաւանդութիւնը հիմնւում է հայրենասիրութեան վրա, աշխատելով ժամանակին արթնացնել այդ զգացմունքը և տալ նրան առողջ մարդասիրական բովանդակութիւն։ Երիտասարդ սերունդը պիտի սովորի սիրել իր շրջապատող բնութիւնը և նրա մէջ ապրող մարդկանց, որպէսզի ապագայում իր մէջ բաւականին ուժ գտնի այդ միջավայրի կատարելագործութեան համար անձնուէր աշխատելու։

Այսպիսի նպատակներ դնելով, պատմութեան ուսուցումը նիւթի ընտրութեան մէջ առաջնակարգ տեղ է տալիս հայրենիքի պատմութեանը, սակայն՝ ընդունելով որ Հայոց աշխարհի քաղաքակրթութիւնը զարգացել է ոչ միայն ներքին, սեփական ուժերով, այլ և գլխաւորապէս օտար քաղաքակրթութեանց ազդեցութեան տակ և որ այսուհետև էլ նրա առաջընթացութիւնը անխզելի կապուած է լինելու մարդկութեան ընդհանուր առաջադիմութեան հետ, այդ ուսուցումը չէ սահմանափակւում միայն հայրենի պատմութեան շրջաններով, այլ նիւթեր է վերցնում նաև ընդ-

հանուր պատմութիւնից, այնքան, որքան այս վերջինս ներգործել է և դեռ կարող է ներգործել Հայաստանի քաղաքակրթութեան զարգացման վրա թէ գործնական գիւտերով, թէ հասարակական հասկացողութիւններով և թէ առհասարակ մտաւոր նուաճումներով։ Այսպիսով և ռուսաց պատմութիւնը պիտի բռնի իր պատշաճաւոր տեղը պատմութեան ուսուցման մէջ, մանաւանդ վերջին երկու դարերի պատմութիւնը, երբ մեր երկիրն աւելի սերտ յարաբերութիւնների մէջ մտաւ ռուսական պետութեան հետ և հետզհետէ աւելի ու աւելի է ենթարկւում ռուսաց քաղաքակրթութեան և պետական-կազմակերպութեան ազդեցութեանը։

Դասընթացքը վերջանում է քաղաքացիական ուսմունքով, որտեղ ամփոփուած են կարևոր գործնական տեղեկութիւններ ռուսահայի իրաւունքների և պարտականութիւնների մասին, նոյնպէս և տարրական քաղաքատնտեսական և իրաւաբանական հասկացողութիւններ։

Ամբողջ ուսուցանելի նիւթը աւանդւում է 4 դասաններում, սկսած III դասարանից, բայց այնպէս, որ տարրական չորսամեայ ծխական դպրոց աւարտողները արդէն մի ամբողջացրած գիտութիւն ստացած հեռանան։ Այդ պատճառով անկարելի է խոյս տալ նիւթի մի մասի կրկնութիւնից V և VI դասարաններում. բայց այս հանգամանքը ունի և իր լաւ կողմերը, որովհետև թոյլ է տալիս աւելի բազմակողմանի լուսաբանել պատմական երևոյթները և նրանց աւելի խոր պատճառները ցոյց տալ, քանի որ բարձր դասարաններում ուսուցիչը գործ է ունենում աւելի խելահաս և զարգացած աշակերտների հետ։

Առարկաների կենդրոնացման նպատակով, ինչպէս երևում է աշխարհագրութեան ծրագրից, պատմու-

*թեան և աշխարհագրութիան նիւթերը սերտ կապերով շաղկապւում են իրար հետ։*

*Դասընթացքը սկսւում է III դասարանում նախապատրաստական շրջանով, որը աչքի առաջ ունի ա) զարգացնել պատմական երևակայութիւնը, բ) պարզաբանել պատմական և հասարակական տարրական գաղափարները, գ) արծարծել սէր դէպի հայրենիքի նշանաւոր վայրերը և դ) ազդել մանուկների բարոյական աշխարհի վրա, ոգևորելով նրանց հայրենի հերոսների վսեմ պատկերներով և արթնացնելով նրանց մէջ վեհ ձգտումներ։*

*Այս տարւայ նիւթը կապ ունի՝ մի կողմից՝ հեքիաթների, միւս կողմից՝ ճշգրիտ պատմութեան հետ և գրգռում է երեխաների մէջ հասարակագիտական հետաքրքրութեան առաջին նշոյլները։*

*Աշակերտները նախ համառօտ տեղեկութիւններ են ստանում նախապատմական մարդու մասին։ Ոչ մի այլ պատմական նիւթ այնքան հասկանալի չէ այդ հասակի երեխաների համար, որքան նախնական մարդու առաջին գիւտերը։ Դա կազմում է մի իրական Ռօբինզոնադ։ Ծանօթութիւնները պիտի լինեն ոչ մանրամասն. ուսուցիչը պիտի օգտւի ժամանակակից մնացորդներից թէ հասարակական կեանքի և թէ նիւթական աշխարհի մէջ։ Աշակերտների գիտեցած ազգագրական տեղեկութիւնները շատ կնպաստեն այդ դէպքում։ Այնտեղ, որտեղ անհնարին է ցոյց տալ իսկական հնագիտական իրեր, պէտք է ունենալ մօդելներ կամ գոնէ պատկերներ. աշակերտական զբօսանքներն էլ կարող են առատ բացատրական նիւթ մատակարարել։ Դասընթացքի այս մասը մի մեծ յարմարութիւն է ներկայացնում այն տեսակէտից, որ ուսուցիչը՝ խրախուսելով աշակերտներին երևակայութեամբ տեղափոխ-*

ւել նախապատմական ժամանակները և հարցեր տալով՝ օրինակ թէ՝ «ինչպէ՞ս պիտի այն ժամանակ պաշտպանուէիք գազաններից», «որտե՞ղ կբնակուէիք», «ինչո՞վ կը կերակրուէիք», «եթէ օջախի կրակը հանգչէր, ինչպէ՞ս պիտի նորից վառէիք» և այլն,—արծարծում է նրանց հարցասիրութիւնը, զարթեցնում է հնարագիտութիւնը և բազմաթիւ առիթներ է տալիս ինքնուրոյն մտաւոր աշխատանքի համար։ Այդպիսով աշակերտները իրենք հոգեպէս մասնակցած են լինում նախնական մարդու գիւտերին։ Ուսուցիչը պիտի աշակերտների ուշադրութիւնը դարձնի ոչ միայն այն բանի վրա, թէ ինչպէ՞ս է մարդ հնարել, օրինակ՝ երկաթէ գործիքը, գտել կրակը, այլ և թէ ինչ նշանակութիւն ունի այդ հնարւածքը կամ գիւտը։ Այստեղ առաջին անգամ վարժւում է պատճառներ և հետևանքներ որոնելու ընդունակութիւնը։

III դասարանում նախապատմական մարդուց դասընթացքը անցնում է հայրենի առասպելներին։ Այս առասպելները մշակելիս՝ ուսուցիչը ոչ միայն նրանց հոգեբանական և բարոյագիտական տարրերը պիտի վերլուծի, այլ և օգուտ քաղի նրանց մէջ պարունակւող պատմական տեղեկութիւններից։ Նա պիտի նախ՝ ամեն կերպ աշխատի լուսաբանել և մեկնել պատմական հասկացողութիւնները։ Այստեղ աշակերտները իմանում են թէ ինչ է ազգ, ցեղ, տոհմ, գերդաստան, նահապետ, հայրենիք, սահման, զօրք, զէնք, կրօն, վարչութիւն, դատաստան, ստրուկ, գերի, փրկանք, հարկ, ռոճիկ։ Միւս կողից՝ այստեղ նրանք ծանօթանում են նախնական քաղաքակրթական կեանքի այն ներքին և արտաքին յարաբերութիւնների հետ, որոնք ընդհանրապէս իրական գծերով են պատկերացւում այդ հնագոյն աւանդութիւնների մէջ։ Առասպելների

*բանաստեղծական մասը վերջապես՝ սնունդ է տալիս երեխաների գեղասիրական ճաշակին և սիրելի է դարձնում ոչ միայն հերոսների անձնավորությունները, այլ և այն վայրերը, որտեղ կատարվում են նրանց սխրագործությունները։ Ամեն մի գավառում առանձին ուշադրություն պետք է դարձնել առասպելների այն մանրամասնությունների վրա, որոնք կապված են այդ տեղերի հետ։ Օրինակ՝ Արարատեան դաշտի աշակերտների հետաքրքրությունը ավելի է լարվում, երբ նրանց պատմում են Արմենակի և նրա հաջորդների գաղութների մասին. Ջավախքի աշակերտներինը, երբ իմանում են Վաղարշակի կարգավորությունները Տայոց լեռներում և Ռիոնի հովտում և այլն։ Ծրագիրը յանձնարարում է անցնել նաև զուտ տեղական ավանդությունները, կրկին ծննդավայրի զգացմունքը զարգացնելու և մշակելու նպատակով։*

IV *դասարանում արդեն ամփոփ գաղափար է տրվում հայոց անցեալի ամբողջութեան մասին, կանգ առնելով ժամանակագրական կարգով ոչ թե մանրամասնությունների, այլ դարաշրջաններ կազմող* գագաթնակէտերի վրա և *համախմբելով երկրորդական գծերը այդ գլխավոր կենդրոնական երևույթների շուրջը։ Այս դասընթացքը գործ ունի գլխավորապես* իրական *պատմական կեանքի հետ և շարունակում է զարգացնել պատմական երևակայությունը, միայն թե իրական դէպքերի նկարագրութեամբ։ Քանի որ աշակերտների անձնական հասարակագիտական դիտողությունները դեռ շատ սահմանափակ են և ունեցած պատմական համեմատական նյութը շատ չնչին, այստեղ առանձնապես շեշտվում են պատմական անձնավորությունների գործողությունների հոգեբանական և բարոյագիտական կողմերը։ Երեխաները դեռ ևս մեծ նշանակություն են*

տալիս անձնաւորութեան խաղացած դերին պատմութեան մէջ և դժուարանում են պատմական իրողութիւնների քաղաքակրթական պատճառները ըմբռնել։ Բայց այս չէ նշանակում, թէ պատմութիւնը պիտի դառնայ կենսագրութիւնների մի հիւսուածք։ Առջևի շարքում միշտ պիտի լինի պատմական կեանքը, իսկ անձնական կեանքի մանրամասնութիւնները երկրորդական տեղ բռնեն։ Ամեն մի շրջան պիտի մշակուած լինի իբրև մի ամփոփ պատկեր, բայց այնպէս որ մէկ շրջան միւսի հետ կապւի ներքին կապերով։ Թւականներ և յատուկ անուններ պիտի հաղորդւեն որչափ կարելի է քիչ, բայց այդ քիչը աշակերտները պիտի լաւ իւրացնեն։ Ուսուցիչը պիտի կարողանայ պատմական մանրամասնութիւններից ընտրել այն, ինչ որ թանձրացնում և աւելի տպաւորիչ է դարձնում իրողութիւնները, և այդպիսով կենդանացնի փոքրիկ ունկնդիրների երևակայութեան մէջ պատմական պատկերները։

Դասընթացքի սկզբում նախ ամփոփւում են այն աշխարհագրական պատմական տեղեկութիւնները, որ հաղորդւած էին նախորդ դասարանում, իսկ նոր մանրամասնութիւններ իւրացւում են հետզհետէ, պատմական նիւթի հետ զուգընթացաբար։ Աշակերտները պիտի նոյն եղանակով, ինչ եղանակով որ գծագրում են Անդրկովկասի և կից հայկական երկիրների քարտէզը, գծագրեն նաև Հայաստանի պատմական քարտէզը, նշանակելով իրենց յայտնի պատմական վայրերը։

Ինչպէս որ չըպէտք է ոչ մի պատմական-աշխարհագրական անուն տալ, առանց այդ տեղը քարտէզի վրա ցոյց տալու, այնպէս և չըպէտք է առանց բացատրութեան թողնել հայրենիքի պատմութեան հետ կապւած օտարազգի պատմական անունները և դէպքերը։ Ուսուցիչը շարունակ պիտի ծանօթացնի համառօտ, ամ-

փոփ խօսքերով, առանց աւելորդ մանրամասնութիւն-ների, ընդհանուր պատմութեան այն երևոյթներին, որոնք կապւած են հայոց անցեալի և ներկայի հետ։ Այդ ծանօթութիւնները պիտի մի տեսակ բացատրութիւններ լինեն աւանդելիք պատմական նիւթի մէջ պատահող օտար ազգերի, հերոսների անունների, ներմուծւող գիւտերի, ներգործող հասարակական շարժումների և այլն։ Այսպէս՝ համառօտ տեղեկութիւններ են տրւում թէ ովքեր են եղել Հայաստանի մերձաւոր հարևան ազգերը, յոյները, Ալէքսանդր Մակեդոնացին, սելև-կեանները, Հռոմը, ինչպէս է քրիստոնէութիւնը տա-րածւել Հռոմէական կայսրութեան մէջ, որտեղից են եկել հոները, ինչպէս է կործանւել Հռոմէացոց պետու-թիւնը, ով է Մահմեդը, խաչակիրները, Լութերը, Պետ-րոս Մեծը, Կատարինէ Մեծը և այլն։ Սակայն զգոյշ պէտք է լինել, չըլինի թէ այս տեղեկութիւնները ծան-րաբեռնեն աշակերտների յիշողութիւնը և շփոթու-թիւն առաջացնեն նրանց մտքի մէջ։ Անհրաժեշտ է որ աշխարհագրութեան ուսուցիչն էլ իր դասերի նիւթի հետ կապակցի ընդհանուր պատմութիւնից երեխաների ստացած ծանօթութիւնները։

V և VI դասարաններում պատմական առարկա-ներին յատկացւած է շաբաթական չորս-չորս ժամ, որոնցից մէկ ժամ ռուսաց, իսկ երեք ժամ հայոց և ընդհանուր պատմութեան համար։ Վերջին երկու ա-ռարկաների ուսուցիչը միևնոյն անձնաւորութիւնը պիտի լինի, որպէսզի կարողանայ երկու դասընթացք-ներն էլ սերտ կապակցութեամբ անցել և հարկաւոր դէպքերում շաբաթական երեք ժամերից մէկը ազատ կերպով տալ ընդհանուր պատմութեանը և երկուսը՝ հայոց և՝ ընդհակառակը։ Սակայն այս ազատութիւնը նա չըպէտք է ի չար գործ դնի, չափազանց շատ ժամ

յատկացնելով ընդհանուր պատմութեանը, և չըպէտք է աչքից բաց թողնի, որ հայրենագիտութիւնն է այս շրջանի դպրոցական ծրագրի կենդրոնը։

Այս տարիների հայոց պատմութեան դասընթացքը լրացնում և ամփոփում է նախորդ տարիներում ստացած տեղեկութիւնները և քաղաքակրթական զարգացման մի կապակցուած պատկեր է ներկայացնում։ Նախորդ բաժանմունքի մատակարարած նիւթից այստեղ աւանդելիք նիւթը նրանով է տարբերւում, որ իր գլխաւոր ուշադրութիւնը դարձնում է քաղաքակրթական-պատմական երևոյթների և ներքին կեանքի հանգամանքների վրա և որ իրողութիւնների պատճառներն և հետևանքները մեկնելիս՝ առանձնապէս շեշտում է կուլտուրական կողմը։ Այստեղ գործողը ոչ այնքան անձնաւորութիւնն է, որքան ամբողջ ժողովուրդը, ուսուցման առարկան է առօրեայ կեանքը, հասարակութիւնը իր զանազան խաւերով, որի վրա շատ անգամ քիչ են ազդել քաղաքական արտաքին փոփոխութիւնները։ Այս տեսակէտով Հայոց պատմութիւնը ներկայացնում է մի որոշ քաղաքակրթական յաջորդականութիւն, որ աշակերտներին պատւաստում է հասարակութեան օրգանական, բնական զարգացման գաղափար։

Այս դասընթացքը՝ փաստօրէն ցոյց տալով Հայաստանում իրար յաջորդած սերունդների կուլտուրական կապերը, յատկապէս նպատակ ունի արծարծել և ծաւալել աշակերտների մէջ հասարակական ձգտումներ։ Աշակերտները պիտի ներշնչւեն այն համոզմունքով, որ իրենք շրջապատից և անցեալից կտրուած, անկախ էակներ չեն, այլ որոշ անքակտելի կապերով կապւած են միևնոյն հայրենիքում ապրած և ապրող ընդհանրութեան հետ և՝ ունենալով բնական իրաւունքներ, պիտի և գիտակցեն իրենց պարտականութիւնները թէ դէպի

*ժամանակակից հասարակութիւնը և թէ դէպի յետնորդները։*

*Հայոց պատմութիւնը անցնելիս՝ ուսուցիչը պիտի միշտ աչքի առաջ ունենայ, որ աշակերտների համար պարզ լինեն այն պատմական-քաղաքակրթական աստիճանները, որոնցով անցել է հայոց ազգը, և պիտի այդ աստիճանները համեմատի և կապակցի ռուսաց և ընդհանուր պատմութեան կուլտուրական առաջընթացութեան հետ։*

*Ինչպէս յայտնի է, հայոց պատմութեան համար չունենք ժամանակակից գիտութեան պահանջների համեմատ մշակուած դասագիրք։ Իւրաքանչիւր ուսուցիչ այդ պատճառով պիտի աշխատի ծանօթանալ հայագիտութեան մէջ եղած առանձին հետազօտութիւնների և պատմական աղբիւրների հետ, որպէսզի խուսափի աշակերտներին այնպիսի տեղեկութիւններ տալուց, որոնք արդէն մերժուած են գիտութեան կողմից։ Մի այսպիսի անմիջական ծանօթութիւն աղբիւրների հետ առանձին կենդանութիւն և հրապոյր կըտայ դասատուի խօսքերին, մանաւանդ եթէ նա կարողանայ պատմագիրներից քաղուածքներ բերել և երբեմն ականատեսների բերանով նկարագրել իրողութիւնները։ Առհասարակ պատմական աղբիւրների դպրոցական պէտքերին յարմարեցրած մի ժողովածու ահագին ծառայութիւն կը կարողանար մատուցանել հայոց պատմութեան ուսուցման գործին։ Ուսուցիչը պիտի օգտուի պատմական վայրերի նկարներից, պատմական դէպքերի պատկերներից, պատմական իրերից, քարտէզից, երբեմն ինքը պիտի նկարի գրատախտակի վրա ընդհանուր գծերով որև է զէնքի, զգեստի, շինութեան պատկեր, զօրաբանակի դասաւորութիւնը և այլն, առհասարակ՝ պիտի ամեն միջոցի դիմի իր դասաւանդու-*

թիւնը աւելի թանձրացնելու, դիտողական դարձնելու
համար: Շատ նպատակայարմար է օգտուել նաև պատ-
մական նիւթերի մշակութիւններից գեղարուեստական
գրականութեան մէջ, մանաւանդ բանաստեղծութիւն-
ներից: Ամեն մինոր նիւթ պիտի կապակցութեան մէջ
դնել անցած նիւթերի հետ, բայց նախ քրքրել դեռ
այդ նիւթը, գտնելով իրողութեան պատմական և հո-
գեբանական պատճառները և լուսաբանելով նրա բա-
րոյագիտական կողմը:

Ընդհանուր դասընթացքը անցնելիս միշտ աչքի
առաջ պէտք է ունենալ նաև ծննդավայրի և մերձաւոր
բնագաւառի անցեալը: Անհրաժեշտ է աւելի մանրա-
մասն տեղեկութիւններ տալ այդ՝ զուտ տեղական պատ-
մութիւնից. օրինակ՝ լոռեցի աշակերտներին պէտք է
լաւ ծանօթացնել Կիւրիկեան թագաւորութեան և Եր-
կայնաբազուկների տոհմի գործունէութեան հետ, Շի-
րակի դաշտի մանուկներին՝ Անիի թագաւորների հետ,
Ղարաբաղի մելիքութիւնների պատմութեան մանրա-
մասնութիւնները առանձին ուշադրութիւն պիտի գրա-
ւեն գլխաւորապէս Ղարաբաղի դպրոցներում և այլն:
Ծննդավայրի և մերձաւոր բնագաւառի ծանօթ բնու-
թիւնը կօգնի աւելի լաւ հասկանալ տեղական պատ-
մական դէպքերը, և դրանց միջոցով աւելի հեշտ կըլինի
պատկերացնել և ուրիշ դէպքերը ընդհանրապէս հայոց
պատմութիւնից:

Գալով ռուսաց պատմութեան դասաւանդութեանը,
այստեղ ևս առաջնակարգ տեղ պէտք է տալ զուտ քաղա-
քակրթական առաջադիմական քայլերին: Ներքին կեան-
քի զանազան կողմերի ուսումնասիրութիւնը պիտի ծա-
նօթացնի աշակերտներին ռուսաց պետութեան աճման
հետ և ընդգծի այն հետևանքները, որ հայոց ազգի
համար ունեցաւ մերձաւոր շփումը ռուսաց քաղաքա-

կրթութեան հետ։ Մեր վերջին դարերի պատմութիւնը անհասկանալի կըլնայ առանց այդպիսի ծանօթութեան ռուսական կեանքի զարգացման հետ։ Այդ պատմութեան օրինակը՝ միւս կողմից, աւելի կամրապնդի աշակերտների մէջ այն համոզմունքը, որ ճշմարիտ առաջադիմութիւնը անհնարին է առանց բոլոր քաղաքակիրթ ազգերի փոխադարձ գործակցութեան և որ բոլոր ազգերի ընդհանուր ջանքերով մշակւում է մի համամարդկային կուլտուրա, որը ամեն ազգի պատմութեան մէջ մտցնում է թարմացնող, առաջ մղող ուժեղ հոսանքներ։ Այս գիտակցութեան զարգացումը պիտի լինի մանաւանդ ընդհանուր պատմութեան ուսուցման յատուկ նպատակը։

Ընդհանուր պատմութեան ուսուցումը կոչւած է նաև հեռու պահելու աշակերտներին ազգային նեղ ինքնագոհութիւնից, որ միշտ խոչընդոտ է հանդիսացել հասարակութեան քաղաքակրթական առաջադիմութեան։ Այս առարկան պիտի ցոյց տայ, թէ ինչ հսկայական ջանքերի շնորհիւ է կարելի եղել ձեռք բերել այն տեսական, գործնական և ընկերական գիտերը, որ հետզհետէ դառել են և դառնում են ընդհանուր մարդկութեան սեփականութիւն, և թէ ինչպէս այդ գիտերը արդիւնք են թէ մեծ և թէ փոքր ազգութիւնների երկարատև և անընդհատ գործակցութեան։ Ընդհանուր պատմութեան դասընթացքը պիտի սովորեցնի երախտագիտութեամբ վերաբերւել մարդկութեան բոլոր բարերարներին, որ դարին կամ որ ազգին էլ որ սրանք պատկանելիս լինէին։

Ընդհանուր պատմութեան դասերին պիտի մատակարարել միայն այն նիւթը, որ լուսաբանում է այդ էվօլիւցիայի գաղափարը և պատւաստում է այդ գաղափարից բղխող բարոյական սկզբունքներ։ Դա իսկա-

պէս մարդկային քաղաքակրթության պատմություն է։ Պէտք է վերցնել միմիայն այնպիսի անձնավորություն-ներ, որոնք դարաշրջանի կենդրոններ են կազմում և որոշ գաղափարների կրիչներ են եղել։ Ինկատի ունե-նալով ձեռքի տակ եղած ժամերի սղությունը, ուսու-ցիչը պիտի խոյս տայ աւելորդ մանրամասնություն-ներից։ Բացի պատմական-աշխարհագրական քարտէզ-ներից նա պիտի յաճախ դիմի պատմական նկարների և պատկերների ժողովածուին։ Նրա ամբողջ դասաւան-թիւնը պիտի լինի մի տեսակ լուսաբանություն ցոյց-տրւող տեսարանների և նկարների։

Ցանկալի է, որ դպրոցական գրադարանը ունե-նայ պատմական մանկական գրւածքների հաւաքածու, որի մէջ գտնւէին մանաւանդ ժողովրդական բանահիւ-սութեան առաջնակարգ ստեղծագործությունները, օ-րինակ՝ Քաղդէայի աւասպելները, Իլիական և Ոդի-սականը, Ռօլանդի երգը, Նիբելունգների երգը և այլն։ —Քաղաքական դէպքերի և պետական անձնաւորու-թիւնների վրա պէտք է կանգ առնել շատ համառօտ կերպով, այնքան, որքան որ անհրաժեշտ է պատմութեան ընթացքի թելը պահպանելու համար։

Պատմութեան ուսուցումը լրանում է քաղաքացիական ուսմունքով։ Այդ առարկայի մէջ հաղորդւող գաղափար-ները աշակերտները պիտի մաս-մաս ստացած լինեն դեռ աւելի վաղ, պատմութեան, աշխարհագրութեան և լեզուի դասընթացքների մէջ. դա միայն ամփոփում և լրացնում է այդ կցկտուր տեղեկությունները։ Ցան-կալի կը լինէր, որ այդ առարկան էլ գտնւէր պատմու-թեան ուսուցչի ձեռքին, որպէսզի նա կարողանար սերտ կապ պահպանել երկու առնչակից դասընթացքների մէջ։ Նիւթն աւելի հետաքրքրական և ըմբռնելի է դառ-նում աշակերտների համար, երբ շաղկապւում է իրա-

կան դիտողութիւնների հետ։ Պէտք է զարթեցնել սաների հարցասիրութիւնը, դիտել տալով՝ օրինակ՝ գիւղական և քաղաքային ընտրութիւնները, դատավարութիւնը, կեանքում պատահած իրական դէպքերը, տնտեսական երևոյթները։ Այդ դիտողութիւնները և ուսուցչի բերած օրինակները պիտի հնարաւորութիւն տան հասկանալու շրջապատող հասարակական կեանքի կազմակերպութիւնը, նրա մէջ տիրող իրական և տնտեսական տարրական յարաբերութիւնները և այդպիսով գործնական ցուցմունքներով հեշտացնեն երիտասարդ սերնդի առաջին քայլերը հասարակական գործունէութեան ասպարէզում։

## Ա. ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

—

### Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

1. *Նախապատմական մարդը։*—Հնագոյն տարրական գիւտերը—նախնական գործիքներն ու զէնքերը (քարէ, բրօնզէ և երկաթէ), կրակ, բնակարան, հագուստ (մանելու և գործելու արհեստներ), ամանեղէն (փայտէ, կաւէ և ապակէ), զարդեր։ Պարապմունքներ (որսորդութիւն, խաշնարածութիւն և երկրագործութիւն), փոխանակութիւն (հաղորդակցութեան միջոցներ), դասակարգեր (ազատներ, գերիներ և ստրուկներ, քրմեր)։ Ընտանեկան կեանք։ Գիր։

2. *Հայրենի առասպելներ եւ վէպեր։*— Հայկ ու Բէլ։ Արամ։ Արա Գեղեցիկ և Շամիրամ։ Տիգրան Երուանդեան։ Վահագն։ Վաղարշակ։ Երուանդ Արշակունի։ Արտաշէս Աշխարհակալ։ Արտաշէս Բ. և Արտաւազդ։— Դաւիթ և Մհեր։

*Ծանօթ. Տալ նաև տեղական, գաւառական աւանդութիւններ՝ կապւած զանազան վայրերի և առասպելական անձնաւորութիւնների անունների հետ, որտեղ որ այդպիսի աւանդութիւններ պահպանւել են ժողովրդի բերանում։*

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաթական 2 դաս*).

*Հայաստանի իրական պատմութեան գլխաւոր կէտերը, «գագաթնակէտերը»։*

*Տիգրան Մեծ։—Տրդատ և Ս. Լուսաւորիչ։—Արշակ Բ. և Ներսէս Մեծ։—Ս. Սահակ և Ս. Մեսրոպ (տառերի գիւտը)։—Կրօնական պատերազմները (Վարդանանց և Վահանանց—իրար հետ միացրած)։—Արաբների արշաւանքը և Ոստիկանութիւնը (Նախիջևանի կոտորածը)։—Աշոտ Ա.։—Աշոտ Ողորմած և Անիի շինութիւնը։—Սելջուկների արշաւանքը և Անիի վիճակը։—Հայերի գաղթականութիւնները։ Ռուբինեան պետութեան սկզբնաւորութիւնը և Լևոն Մեծագործ։—Թաթարների արշաւանքը և Լանկթամուր։—Շահ-Աբաս։— Դաւիթ-բէգ (ռուսաց միջամտութիւնը հայոց գործերին)։—Ռուսների հաստատւելը Կովկասում, հայերի գաղթելը Պարսկաստանից և Տաճկաստանից Ռուսաց բաժինը։—Ներսէս Աշտարակեցի։—Ռուսահայք, տաճկահայք և պարսկահայք։*

## Ե. ԴԱՍԱՐԱՆ.

*Ծանօթ. Փակագծի մէջ առածները պատմական երևոյթների կապը պահպանելու համար է, հետևապէս պէտք է անցնել շատ համառօտ։*

*1. Հայաստանը հայերի երևալուց առաջ։—Սեպա-*

գիր արձանագրութիւններ։ Խալդեր։ Ուրարդեցոց թագաւորութեան ուժեղանալն և ընդարձակւելը։ Վանի շինութիւնը։ Ասորեստանի ազդեցութիւնը։

2. Հնդկաևրոպացոց գաղթականութիւնը։ Կիմմերների արշաւանքը։ Ուրարդիի և Ասորեստանի պետութիւնների անկումը։ Հայերի երևալը և հաստատւելը խալդերի երկրում։ Խալդերի խառնւելը հայերի հետ։

3. Պարսից տիրապետութեան հաստատւելը Հայաստանում։ Տիգրան և Կիւրոս (ըստ Քսենոփոնի)։ Հայերի և Կորդւացիների յարաբերութիւնները. պարսկական ամրոցները Հայաստանում։ Հայաստանը—պարսից սատրապութիւն։ Պարսկական լեզուի և զրադաշտական կրօնի տարածւելը Հայաստանում։ Հայոց գիւղը—ըստ Քսէնոփոնի, առևտուրը—ըստ Հերոդոտի։

(4. Պարսից պետութեան կործանումը Ալէքսանդր Մակեդոնացու ձեռով։ Սելևկեան պետութեան հաստատւելը։ Հայերի յարաբերութիւնը սելևկեանների հետ։ Արտաշիաս և Զարիադրէս։ Հայաստանը—երկու թագաւորութիւն։)

5. Տիգրան Մեծը միացնում է այդ թագաւորութիւնները և գրաւում հարևան երկիրները։ Կռիւ հռոմայեցոց հետ։ Ժողովրդի սէրը դէպի ազգային հեթանոսական աստւածները։ Արտաշատի դաշնադրութիւնը։

(6. Արտաշիասի սերնդի սպառումը։ Հռոմայեցիների փորձերը հարևան երկիրների հարստութիւններից թագաւոր նստեցնելու Հայաստանում։) Տրդատ Պարթև. Տրդատի ճանապարհորդութիւնը Հռոմ («Ոսկէ օր»)։

(Հռոմայեցոց և պարսից կռիւները սահմանի համար։ Հայաստանը պարսից նահանգ (Խոսրովի սպանութիւնը)։)

7. Հայոց հեթանոսական կրօնը։ Աստւածութիւն-

ները։ Ոգիներ։ Պաշտամանց տեղեր։ Քրմական դասակարգ։

8. Քրիստոնէութեան տարածւելը Հայաստանում։ Ասորի քրիստոնեաների ազդեցութիւնը։ Ս. Տրդատ և ս. Լուսաւորիչ. քրիստոնէութիւնը՝ պաշտօնական կրօն Հայաստանում։ Եկեղեցու կազմակերպութիւնը։ Յարաբերութիւնը Կեսարիայի Եկեղեցու և ընդհանրական եկեղեցու հետ։ Կաթողիկոսութիւն։ Կաթողիկոսների յարաբերութիւնը թագաւորի և նախարարների հետ։ Եկեղեցին Ներսէս Մեծի օրով։ Ինքնագլխութիւն. Կաթողիկոսական աթոռանիստը։ Եկեղեցական կալւածքները։ Քրիստոնէութեան ազդեցութիւնը հայերի վրա։

9. Արշակ Բ. և Պապ. ընդհարումներ կաթողիկոսութեան և նախարարների հետ։

10. Նախարարական կազմակերպութիւնը։—Նախարարների ծագումը։ Տանուտէր և սեպուհ։ Նախարարների յարաբերութիւնը թագաւորի և ուրիշ նախարարների հետ։ Պաշտօններ զօրքի մէջ և պալատում։ Յարաբերութիւնը ժողովրդի հետ (քաղաքացիք և գիւղացիք)․ որսորդութիւն և պատերազմ (զօրքի կազմութիւնը, կռւի սովորական եղանակը)։ Նախարարական ամրոցները։

11. (Հայաստանի բաժանելը յոյների և պարսիկների մէջ։ Արշակունիների անկումը։ Արտաշէս վերջինը։ Մարզպանութիւն)։

12. Գրերի գիւտը։ Թարգմանիչներ։ Ի՞նչ լեզւից էին թարգմանում եկեղեցական գրքերը։ Թարգմանիչները և նրանց աշակերտները։ Նրանց վերաբերմունքը դէպի հայկական կեանքի զանազան երևոյթները և դէպի թագաւորութեան անկումը մասնաւորապէս։

13. Կրօնական պատերազմներ. կրօնական, տնտեսական և քաղաքական պատճառները. Աւարայրի ճա-

կատամարտը և նրա անմիջական հետևանքները։ Պատերազմների երկրորդ շրջանը. (Վահանանք)։ Նվարսակի դաշնադրությունը։ Հայ մարզպաններ։

14. Հայոց եկեղեցու բաժանումը միւս եկեղեցիներից։ Հայկական տոմարի հաստատումը։ Հայոց եկեղեցու լիակատար ինքնօրինությունը։ Ցարաբերություն վրաց և աղվանից եկեղեցիների հետ։

15. Արաբների արշավանքը։ Դվինի Ոստիկանությունը, Հայաստանի քաղաքական կազմակերպությունը (իշխանաց իշխան, սպարապետ, նախարարներ)։ Ոստիկանների վերաբերմունքը դեպի հայոց եկեղեցին։ Մամիկոնեանների և Բագրատունիների բռնած դիրքը դեպի ոստիկանները։ Վրաց եկեղեցու բաժանումը հայոց եկեղեցուց։

16. Բագրատունեաց հարստությունը. բարձրանալու պատճառները։ Աշոտ Ա։ (Սմբատի ընդհարումները Ատրպատականի ոստիկանների հետ և մահը)։ Աշոտ Երկաթ. յարաբերությունները յոյների հետ։ Հայաստանը՝ բազմաթիւ թագաւորություններ։ Աշոտ Ողորմած։ Անի քաղաք։ Արաբների ազդեցությունը հայոց քաղաքակրթութեան վրայ։ Առևտուր և առևտրական ճանապարհներ։

## Գ. ԴԱՍԱՐԱՆ

1. Սելջուկների արշաւանքը։ Տուղրիլ-Բէկ և Ալփասլան։ Արծրունեաց և Բագրատունեաց թագաւորությունների անկումը։ Հայոց թագաւորների, նախարարների և ժողովրդի գաղթելը։ Կաթողիկոսական աթոռի փոխադրությունը Կիլիկիա։ Ներսէս Շնորհալի (յարաբերություն յոյների հետ. եկեղեցու բարեզարդութեան խնդիր. հովւական շրջաբերական)։

2. Վանական կեանքի զարգացումը։ Վանքեր. վանական միաբանութիւնների կազմակերպութիւնը և ներքին կեանքը։ Վանքերի նշանակութիւնը ժողովրդի համար։

3. Վրաստանի ուժեղանալը։ Իվանէ Աթաբէկ և Զաքարիա սպասալար։ Անին վրացոց ձեռքում։ Ջալալէդդինի արշաւանքը և Գառնիի կռիւը։

4. Թաթարներ. Ջարմաղան. Գուգարաց աշխարհի աւերումը։ Անին և Կարսը թաթարների ձեռքում։ Թաթարներ և Ռուբինեաններ։ Սելջուկների և թաթարների փոխադարձ յարաբերութիւնները։ Թաթարական պետութեան կազմակերպութիւնը։

5. Ռուբինեան պետութեան ծագումը։ Յարաբերութիւնները խաչակիրների հետ։ Լեւոն Ա. թագաւոր։ Զաբէլ և Հեթում Ա. Հեթումի ճանապարհորդութիւնը մեծ խանի մօտ։ Ռուբինեան թագաւորութեան վերջին տարիները։ Յարաբերութիւնները Հռոմի հետ։ Ներսէս Լամբրոնացի։

6. Լանկթամուր։ Կոտորածներ Հայաստանում։ (Ղարաղօյունններ և աղղօյունններ։ Քրդական պետութիւն։ Նոր պարսկական և օսմանեան պետութեանց սկզբնաւորութիւնը)։ Կաթողիկոսական աթոռի փոխադրութիւնը Էջմիածին։

7. Սէֆեան տուն. (օսմանցիների և պարսիկների մաքառումը Հայաստանի համար)։—Շահ-Աբաս և հայերի գաղթը Պարսկաստան։ Էջմիածնի շինարար կաթողիկոսները։ Աստուածաշնչի տպագրութիւնը։ Կաթօլիկութեան մուտքը Հայաստան։

8. Մխիթար Սեբաստացի և Մխիթարեան միաբանութեան հիմնարկութիւնը։ Մխիթարեանների գործունէութեան նշանակութիւնը։

9. Ղարաբաղի մելիքները. նրանց կազմակերպու-

թիւնը և վերաբերմունքը դէպի ժողովուրդը. յարաբերութիւնը պարսիկների հետ։ Մելիքների արտաքին կեանքը (ամրոցները, զգեստները, զէնքերը) և փոխադարձ յարաբերութիւնները։ Ղարաբաղի մելիքների յարաբերութիւնները Պետրոս Մեծի հետ։ Իսրայէլ Օրի։ Դաւիթ-Բէկ։ Օսմանցիք նուաճում են Ղարաբաղը։ Ապստամբութիւն օսմանցոց դէմ և պարսից իշխանութեան վերականգնումը։

Երկպառակութիւններ մելիքների մէջ։ Շուշին մահմեդականների ձեռքում։

10. Հայերի յարաբերութիւնները Կատարինէ Մեծի հետ։ Սիմէօն կաթողիկոս։ Պոտեմկինի ծրագիրը։ Աղամահմադ խանի արշաւանքը։ Ռուսների մուտքը Անդրկովկաս և Վրաստանի ու Ղարաբաղի միացումը։

11. Ռուսաց տիրապետութեան տարածուելը Անդրկովկասում։ Ռուսների պատերազմները պարսիկների և տաճիկների հետ։ Հայերի բռնած դիրքը այդ պատերազմներում։ Հայերի գաղթելը Պարսկաստանից և Տաճկաստանից։ Հայոց եկեղեցու կազմակերպութիւնը ըստ Պօլօժենիայի։

12. Թանզիմաթ։ Ազգային Սահմանադրութիւն— կենտրոնական և գաւառական կազմակերպութիւններ։ Մասնաւոր կաթողիկոսութիւնները և Երուսաղէմի պատրիարքութիւնը։

13. Ռուս-Տաճկական վերջին պատերազմը։ Հայոց ազգի ցոյց տուած աջակցութիւնը։ Բեռլինի վեհաժողովի վճիռները։ Տաճկահայոց դատը։

14. Հայոց ընդհանրական կաթողիկոսները XIX դարում։ Կրթական գործի զարգացումը։ Բարեգործական հիմնարկութիւնները։

15. Անդրկովկասի կառավարիչները XIX դարում։ Ցիցիանով, Վորոնցով։ Մեծ իշխան Միխայիլ Նիկո-

լայնվիչ։ Գալիցին։ Վերաբերմունքը դէպի հայերը։ Ռուսահայերի քաղաքակրթական և տնտեսական զարգացումը։

16. Պարսկահայերը։ Համառոտ հայեացք հայոց գաղթականութիւնների վրայ։ Լեհաստանի և Հնդկաստանի հայերը։ Նորագոյն գաղթականները։

## Բ. ՌՈՒՍԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

—

### Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

1. Ո՞րտեղից և երբ են եկել ռուսական սլաւոնները. Նրանց նիստ ու կացը։

2. Վարեագների հրաւիրուելը. Ռիւրիկ։

3. Ռուսների մկրտութիւնը. Ս. Վլադիմիր. Սլաւոնական գիր։

4. (Եարօսլաւ Իմաստուն. «Русская правда»).

5. Ռուսաց ներքին կեանքը XI դարի միջում. «կնեազ», դրուժինա, գիւղացիութիւն, հոգեւորականութիւն, և վանականութեան սկզբնաւորութիւն։ Բոհատիրներ։

6. Ի՞նչ է ուդելնայա սիստեմը։ Ուդելական խռովութիւններ։ Մեծ-իշխանական գահի փոխադրութիւնը Կիևից Վլադիմիր Կլեազմայի վրայ։

7. Թաթարների արշաւանքը. Բաթու. Ոսկէ Օրդու. Ռուսաց իշխանների կախումը Սարայի խաներից։

8. Իօան-Կալիտա—ռուսաց երկրի առաջին հաւաքիչ. Մոսկվայի բարձրանալը։

9. Դիմիտրի Դօնսկօյ և Կուլիկօվօյի ճակատամարտը։

10. Իօան III. գրեթէ բոլոր ուդելների միացումը Մոսկւային. թաթարական լծի թօթափումը. ամուս-

նութիւնը Սօֆիա Պալէօլօգի հետ և մերձեցումը Արևմտեան Եւրոպայի հետ. Մօսկւայի մեծ իշխանների բարք ու վարքի փոփոխութիւնը։

11. Ռուսաց ազնուականութեան ծագումը. գիւղացիների և քաղաքացիների դրութիւնը։ Վանքեր։ Թաթարական լծի ազդեցութիւնը։ Կազակներ։

12. Իօան IV Ահարկու. Նրա թագաւորութեան 3 շրջանները։ Կազանի, Հաշտարխանի և Սիբիրի միացումը. Օպրիչնինա։

13. Վերջին Ռիւրիկովիչը. գիւղացիների ճորտացումը և պատրիարքութեան հաստատութիւն։ Մինին և Պօժարսկի։

14. Առաջին Ռօմանովի ընտրութիւնը. Միխայիլ Ֆեօդօրովիչ և պատրիարք Ֆիլարէտ։ Լեհացիների վերաբերմունքը դէպի ռուսադաւաններրը։ Մալօռօսների ապստամբութիւնը և Մալօռօսիայի միացումը Մօսկւայի հետ։ Պատրիարք Նիկօն և «ռասկօլ»։

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

1. Պետրոս Մեծ. մանկութիւնը, արտասահմանեան ճանապարհորդութիւնը. Շւեդական պատերազմը (Պօլտաւայի ճակատամարտը)։ Պարսկական արշաւանքը և Ղարաբաղի մելիքների ու Վրաստանի հետ ունեցած յարաբերութիւնները։ Պետրոս Մեծի ներքին վերանորոգութիւնները և նրանց նշանակութիւնը։

2. Կատարինէ II Մեծ. ռուսաց պետութեան սահմանների ընդարձակւելը. (հարաւային երկիրների նւաճումը և Ղրիմի խանութեան վերացումը. Լեհաստանի բաժանումը)։ Բարձր դասակարգի և գիւղացիների դրութիւնը այս թագաւորութեան ժամանակ։ Պուգաչօվի ապստամբութիւնը։ Կռիւ Կովկասեան լեռնցիների դէմ

և Կովկասեան Զինուորական Գիծ։ Հայերի և վրացիների հետ ունեցած յարաբերութիւնները։

3. Վրաստանի դրութիւնը վերջին վրացի թագաւորների ժամանակ։ Վրաստանի և Ղարաբաղի միացումը։ Ալէքսանդր I և Ազատարար պատերազմը. Ֆինլանդիայի և Լեհաստանի կարգաւորութիւնը։ Ռուսաց կառավարիչները Կովկասում։

4. Նիկոլայ I. Դեկաբրիստներ։ Պատերազմներ Պարսկաստանի և Տաճկաստանի հետ. Լեհացիների ապստամբութիւնը։ Նիկոլայի ներքին քաղաքականութիւնը։ Վորոնցովի գործունէութիւնը Կովկասում։ Ղրիմի պատերազմը և Սևաստոպոլի պաշարումը։

5. Ալէքսանդր II. Պարիզի դաշնադրութիւնը։ Շամիլի գերութիւնը և կովկասեան պատերազմների վախճանը։ Ճորտութեան վերացումը։ Քաղաքային և զեմստւային կանոնադրութիւնները։ Դատաստանական վերանորոգութիւնը։ Զինուորագրութիւնը։ Հաղորդակցութեան ճանապարհները (երկաթուղիները Կովկասում)։ Ռուսաց փոխարքաները Կովկասում։ Պատերազմ Տաճկաստանի հետ և Բերլինի վեհաժողովը։

6. Ալեքսանդր III. Նրա վերաբերմունքը դէպի քաղաքային և զեմստւային ինքնավարութիւններն ու օտարազգիները։

7. Նիկոլայ II. Հաագայի միջնորդ դատարանի խնդիրը. պատերազմը Ճապոնի դէմ։ Պետական Դումայի հիմնարկութիւնը։

## Գ. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

—

## Ե. ԴԱՍԱՐԱՆ

1. Նախապատմական մարդու մասին III-րդ դա-

դասարանում տրւած տեղեկութիւնների կրկնութիւն, ամփոփում և ընդարձակում։

Եգիպտացիք։ Երկիրն ու բնակիչները։ Եգիպտոսի քաղաքական պատմութիւնը (շատ համառօտ)։ Արձանները։ Գիրը։ Կրօնն ու սովորոյթները (հագուստ, զէնք և այլն)։

2. Քաղդէա և Ասորեստան։ Երկիրն ու բնակիչները։ Բաբելոն և Նինւէ։ Պեղումներ։ Գիր։ Հին աւանդութիւնները մարդու ստեղծագործութեան, ջրհեղեղի և Գելգամէշի մասին։ Քաղդէայի և Ասորեստանի քաղաքական պատմութիւնը (շատ համառօտ)։ Ճարտարապետութիւնը, պարապմունքները, արհեստները և կրօնը։

3. Մարաստան և Պարսկաստան։ Երկիրն ու բնակիչները։ Համառօտ քաղաքական պատմութիւնը—Կիւրոս, Դարեհ Վշտասպեան և Դարեհ Կոդոմանոս. Պարսից պետութեան կործանումը։ Զրադաշտական կրօնը։ Կրթութիւնը և սովորոյթները։

4. Փիւնիկեցիք։ Երկիրն ու բնակիչները։ Գաղթականութիւնները (Կարթագէն). փիւնիկեցոց նաւաշինութիւնը, գիւտերը, այբուբենը, առևտուրը։ Տիւրոսի և Կարթագէնի անկումը։

5. Յունաստան։ Քաղաքները («պօլիս»). գաղթականութիւնները։ Կրօնը, ազգային տօնախմբութիւնները, պատգամախօսները։ Սպարտա և Լիկուրգոս։ Աթէնք և Սողոն (յունական սովորոյթները)։ Պերիկլէս։ Աղէքսանդր Մակեդոնացի։ Սելևկեաններ։ Անտիոքոս Մեծ։ Արշակունիներ։

6. Հռոմ։ Երկիրն ու բնակիչները։ Ծերակոյտ և ազգային ժողով։ Դասակարգերի կռիւ։ Հաննիբալ և Սկիպիոն Աֆրիկացի։ Յուլիոս Կեսար և եռապետներ։ Օգոստոս։ Ներոն։ Ստրկութիւն. գլադիատորները։ Զօրքը և Հռոմէական խաղաղութիւնը։ Քրիստոնէու-

թեան տարածուելը հռոմէական կայսրութեան մէջ։ Հալածանքները։ Վանական կեանքի սկզբնաւորութիւնը։ Դիոկղետիանոս և Կոստանդին Մեծ։ Քրիստոնէութեան յաղթանակը։ (Նիկիոյ ժողովը)։ Կայսրութեան երկու մասի բաժանուելը։ Արևմտեան կայսրութեան անկումը։

7. Արշակունիները Պարսկաստանում։ Նրանց պետութեան սահմանները և կազմակերպութիւնը։ Կռիւները հռոմայեցոց հետ Հայաստանի և Միջագետքի համար։

Սասանեանները։ Շապուհ Բ. Սասանեան պետութեան անկումը։ Պարսկական վիպասանութիւնները (Շահ-Նամէ)։

8. Գերմանացիք։ Նրանց երկիրը։ Սովորոյթները։ Հոնների արշաւանքը և Աթիլլա։ Գերմանացիք հռոմէական հողի վրայ։ Քրիստոնէութեան տարածուելը գերմանացոց մէջ։ Նոր ազգեր—ռոմանացիք, գերմանացիք և սլաւոններ։ Կարլոս Մեծ։ Աւատականութիւն. աւատական սովորոյթները։ Պապ և կայսր։ Կրթութիւն։ Առևտուր։ Ճարտարապետութիւն (գոթական)։

9. Բիւզանդիոն։ Բիւզանդական պալատը։ Կայսրութեան կազմակերպութիւնը։ Գրադարաններ։ Առևտուր։ Տիեզերական ժողովներ։ Ճարտարապետութիւն։ Քրիստոնէութեան տարածուելը սլաւոնների մէջ։ Բիւզանդացոց յարաբերութիւնները հայերի հետ և ազդեցութիւնը հարևան ազգերի վրայ։

10. Արաբներ։ Նրանց երկիրն ու սովորոյթները, Կաաբէ։ Մահմէդ և իսլամութիւն։ Արաբական պետութեան սահմանների ընդարձակուելը։ Հասան և Հուսէյն։ Խալիֆայութիւններ (Բաղդադ և Կորդովա)։ Արաբների վերաբերմունքը դէպի նուաճուած ազգութիւնները։ Արաբական պալատը։ Երկրագործութիւնը,

արհեստները, առևտուրը։ Գիտությունները և գեղարվեստը (ճարտարապետությունը)։ Արաբների քաղաքակրթության ազդեցությունը ուրիշ ազգերի վրա։

## Զ. ԴԱՍԱՐԱՆ

1. Թուրք — Սելջուկներ։ Բաղդադի խալիֆայության անկումը։ Տուղրիլ-Բէկ և Ալփասլան։ Սելջուկեան սուլթանութիւններ։ Երուսաղէմը Թուրքերի ձեռքում։ Խաչակրաց արշաւանքները։ Արևելեան և արևմտեան եկեղեցիների բաժանումը։ Հայազգի կայսրները Բիւզանդիոնում։ Թաթարների արշաւանքը և Կ. Պոլսի անկումը։

2. Վրաստան։ Երկիրն ու բնակիչները։ Քրիստոնէութեան տարածւելը Վրաստանում։ Վրաց եկեղեցու բաժանւելը հայոց եկեղեցուց։ Վրաստանի բարձրանալը Թամար թագուհու օրով։ Վրաստանի վիճակը անմիջապէս թաթարների արշաւանքից յետոյ։

3. Անգլիա։ Ազատութեանց Մեծ Հրովարտակը։ Պառլամենտ։ Միապետութեան զարգացումը Ֆրանսիայում։

4. Գիւտերի դար։ Կողմնացոյց։ Պորտուգալացիների ճանապարհորդութիւնները — Վասկօ-դէ-Գամա։ Սպանիացիների ճանապարհորդութիւնները—Քրիստափոր Կօլումբ։ Ամերիկայի բացման նշանակութիւնը (գաղթավայրեր, նեգրեր, նոր ապրանքներ)։ Տպագրութեան գիւտը—Գուտենբերգ։—Վառօդ և հրազէններ։ Նոր ժամանակների զօրքը։ Ասպետութեան անկումը։

5. Գեղարւեստների եւ գիտութիւնների վերածնութիւնը։ Իտալական քաղաքները, նրանց առևտրական կապերը և կառավարութիւնը։ Բիւզանդական գիտնականների տեղափոխւելը Իտալիա։ Միքէլ Անջէլլօ։ Ռաֆայէլ։ Կոպերնիկոս։ Գալիլէյ։

6. Կրօնական վերանորոգութիւն։ Լութեր և Կալվին։ Բողոքականութեան տարածւելը Եւրոպայում։ Իգնատիոս Լոյոլա և կաթոլիկական ռէակցիա։ Ինկվիզիցիա։ Երեսնամեայ պատերազմը։ Յիսուսականների քարոզչական գործունէութիւնը Փոքր-Ասիայում և Հայաստանում։

7. Անգլիկանութեան հաստատուիլը Անգլիայում։ Կռիւ Թագաւորների և ժողովրդի մէջ։ 1688 թ. յեղափոխութիւնը և «Իրաւունքների Հրովարտակը»։ Եւրոպական գաղութները զանազան երկրներում։ Հիւսիսային Ամերիկայի ապստամբութիւնը և Միացեալ Նահանգների հիմնարկութիւնը։ Վաշինգտոն և Ֆրանկլին։

8. Միահեծանութիւնը Ֆրանսիայում։ Լուդովիկոս XIV. Վերսալը և պալատական սովորութիւնները։ Ժողովրդի դրութիւնը։ Ֆրանսիան XVIII դարի երկրորդ կէսում։ Ֆրանսիական Մեծ Յեղափոխութիւնը 1789 թ.

9. Նապոլէօն Բօնապարտ. Նրա արշաւանքները։ Նապոլէօնը կայսր. Նրա արշաւանքը Ռուսաստան և անկումը. Վիեննայի վեհաժողովը։ Նապոլէօնի գործունէութեան նշանակութիւնը։ Սահմանադրական կառավարութեան հաստատուելը Ֆրանսիայում և պետական այս ձևի տարածւելը Եւրոպայում։

10. Պրուսիա։ Ֆրիդրիխ մեծ։ Պրուսիան սահմանադրական միապետութիւն։ Նապոլէօն III։ Գարիբալդի և Իտալիայի ազատութիւնը։ Ֆրանս-պրուսական պատերազմը։ Գերմանիայի միութիւնը։ Երրորդ հանրապետութիւնը Ֆրանսիայում։

11. Տաճկաստան։ Սուլէյման Փառահեղ։ Տաճկաստանի կառավարութեան ձևը։ Վերաբերմունքը դէպի քրիստոնեաները։ Ենիչերիներ։ Յունաստանի ապստամբութիւնը և ազատութիւնը։ Ներքին վերանորոգութիւնների շրջանը Տաճկաստանում։ Ենիչերիների զօրքի

վերացումը. Թանզիմաթ։ Սլաւօնական ազգերի ապստամբութիւնները և սլաւօնական պետութիւնների հիմնարկութիւնը։

12. Նորագոյն գիւտերը։ Շոգեմեքենայ, շոգենաւ, երկաթուղի։ Հեռագիր. հեռախօս։ Լուցկի։ Գազ։ Լուսանկարչութիւն։ Երկրագործական կատարելագործուած մեքենաներ։ Կարեմեքենայ։ Ելեքտրականութեան գործադրութիւնը առօրեայ կեանքում։ Բանկեր։ Թըղթադրամ։ Առեւտրական ընկերութիւններ։ Բօրսա։

13. Ընդհանուր տեսութիւն քաղաքակիրթ աշխարհի ներկայ կացութեան։ Երկրագնդի ազգաբնակութիւնը։ Քաղաքակիրթ հին և նոր աշխարհներ։ Վայրենի ցեղեր։ Ազգաբնակութեան բաժանումը ըստ ցեղերի և ըստ կրօնների։ Համրամարդկային քաղաքակրթութեան տարածուելը։ Փօստ-հեռագրական միութիւն։ Սանիտարական միութիւն։ Արդիւնաբերութիւն և առեւտուր։ Ստրկութեան և ճորտութեան վերացում ամեն տեղ։ Սահմանադրական կառավարական ձևի յաղթանակը ամեն տեղ։ Խաղաղասիրական ձգտումներ։

---

## III. ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՈՒՍՄՈՒՆՔ

### Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

1. Քաղաքացի և քաղաքացու պարտականութիւնները։ Հարկատուութիւնը, զինուորական ծառայութիւնը և ձայնատուութիւնը

2. Քաղաքացու իրաւունքները։—Հաւասարութիւն օրէնքի առաջ, անձնաւորութեան անձեռնմխելիութիւն. խղճի, մամուլի և ժողովների ազատութիւններ. ժողովրդական ինքնավարութիւն։

3. Ռուսաստանի պետական կազմակերպութիւնը.—գիւղ, քաղաք, զեմստվօ՝ իր ստորաբաժանումներով, պետութիւն։ Օրէնսդրական. կատարողական և դատաստանական իշխանութիւններ ու մարմիններ։ (Քաղաքացիական և քրէական դատարաններ)։

4. Հայոց եկեղեցու կազմակերպութիւնը։—Ծուխ, վիճակ, թեմ, Ռուսահայք— համապատասխան ժողովներով, ատեաններով և պաշտօնեաներով։ Ամենայն Հայոց Կաթողիկոս. Նրա ընտրութեան եղանակը և իշխանութիւնը։ Ռուսաց պետութեան և Հայոց եկեղեցու յարաբերութիւնը։

5. Տարրական ծանօթութիւն մասնաւոր իրաւունքի հետ։ — Քաղաքացիական վիճակ (гражданское состоянiе). անչափահասների հովանաւորութիւն. սեփականութիւն. ժառանգութիւն։ (Սովորական պայմանագրերի ձևեր)։

6. Տնտեսագիտական տարրական ծանօթութիւններ։ Մարդ և նրա պահանջները. հասարակութիւնը և նրա տուած օգուտները։—Հում նիւթ, կապիտալ, աշխատանք—՝անհատական և հաւաքական ընկերակցութեամբ։ Փոխանակում և առևտուր։ — Խնայողութիւն. խնայողական սնդուկ. ապահովագրական և փոխադարձ օգնութեան ընկերութիւններ։

---

## IV. ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

### ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Աշխարհագրութեան ուսուցումը տարրական դպրոցում ի նկատի ունի ա) ծանօթացնել երեխաներին այն տեղական-բնական պայմանների հետ, որոնց մէջ

ապրում է մարդկութիւնը, և բ) ցոյց տալ թէ ինչպէս են այդ պայմանները ներգործում մարդկութեան տընտեսական ու հոգեկան զարգացման և առհասարակ քաղաքակրթութեան վրայ։ Այսպիսով՝ աշխարհագրութիւնը հանդիսանում է բնագիտութիւնն ու պատմութիւնը ամփոփող և միացնող մի գիտութիւն, որ ունի իր խորին կրթիչ նշանակութիւնը։ Նա տալիս է երիտասարդ սերնդին կեանքի մէջ անհրաժեշտ, բազմաթիւ գործնական տեղեկութիւններ և զարգացնում է երեխաների յիշողութիւնն ու դատողութիւնը, սովորեցնելով դիտել, կշռադատել և եզրափակել։ Աշխարհագրութեան դասաւանդութիւնը՝ միացնելով իր մէջ բնագիտական և պատմական գիտութիւնները, նպաստում է ամբողջական աշխարհայեցողութեան մշակմանը աշակերտների մէջ և՝ առատ նիւթ տալով հայրենի երկրի և ուրիշ աշխարհների համեմատութեան համար, հեռու է պահում նրանց կեղծ ազգասիրութիւնից և ներշնչում է ողջամիտ հայրենասիրութիւն։ Վերջապէս, այդ առարկան զարգացնում է աշակերտների մէջ նաև գեղարուեստական ճաշակ. նրանք հէնց առաջին դասից, զբօսանքների ժամանակ ծանօթանում են ծննդավայրի գեղեցկութիւնների հետ և այնուհետև էլ միշտ առիթ են ունենում պատկերների վրա դիտելու ուրիշ երկիրների գեղեցկութիւնները։

Բայց չպէտք է աչքից բաց թողնել, որ տարրական դպրոցը չի կարող տալ աշակերտներին աշխարհագրական նիւթի ամբողջութիւնը, այլ միշտ պիտի ի նկատի ունենայ կրթական նպատակներն և պիտի ղեկավարուի զուտ մանկավարժական սկզբունքներով։ Այսպէս ուրեմն պէտք է տալ միմիայն այն, ինչ որ՝

ա. համապատասխանում է մանկական հասկացողութեանը,

բ. արթնացնում է նրա հարցասիրութիւնը,

գ. հնարաւոր է լաւ անցնել և մշակել դասացուցակի յատկացրած ժամերի ընթացքում և

դ. ունի երեխաների համար գործնական նշանակութիւն։

Այս պատճառով դասընթացքի մէջ առաջին և կարևոր տեղը պիտի բռնի հայրենիքի և հայրենիքին կից երկրների աշխարհագրութիւնը։ Քանի աւելի հեռանում ենք հայրենիքից, այնքան աւելի համառօտ և ընդհանուր պիտի լինեն հաղորդւող տեղեկութիւնները (ի հարկէ, միևնոյն ժամանակ երբէք աչքից բաց չը պէտք է թողնել նաև երևոյթների համեմատական կուլտուրական նշանակութիւնը)։ Մանաւանդ պէտք է խոյս տալ աւելորդ անունների կուտակումից, որով միայն ծանրաբեռնւում է աշակերտների յիշողութիւնը։ Դասատւութեան ժամանակ ուսուցիչը պէտք է աշխատի զարկ տալ դասարանի ինքնուրոյն մտածողութեանը, այնպէս որ աշակերտները իրենք՝ քարտէզին նայելով, կարողանան բնորոշել երկրի մակերևոյթի կազմութիւնը, իմանալ երկրի կլիման և այլն։ Դրա համար անհրաժեշտ է, որ հէնց սկզբից առանձին ուշադրութիւն դարձնել քարտէզի ընթերցանութեան վրա։ Այնուհետև ուսուցիչը կը տայ իր կողմից աշակերտներին միմիայն այն ծանօթութիւնները, որ նրանք չեն կարող ստանալ անմիջապէս քարտէզով։ Աշակերտները պիտի կապակցեն աշխարհագրական երևոյթները և համեմատեն նրանց. ուսուցիչը միայն ղեկավարում է նրանց ինքնուրոյն աշխատանքը և լրացնում է՝ տալով աշխարհագրական անուններ և կուլտուր-աշխարհագրական տեղեկութիւններ։ Սակայն այս վերջինների նկատմամբ էլ պիտի շատ զգոյշ լինել և բաւականանալ միայն նրանով, ինչ որ բնորոշ է երկրի ազգա-

բնակութեան կեանքի համար՝ առանց ճնշող մանրամասնութիւններին։ Հայաբնակ վայրերի և առհասարակ հայութեան կեանքի համար նշանաւոր տեղերի մասին աւելի ծանօթութիւններ են տրւում։

Աշխարհագրութեան վերացական գաղափարները ոչ մի արժէք չունեն։ Դասատուն նախ և առաջ հայրենագիտութեան դասերին, զբօսանքների միջոցով պիտի ձգտի տալ իր սաներին թանձրացեալ աշխարհագրական հասկացողութիւններ և յետոյ էլ նրանց հետ կատարել հեռաւոր էքսկուրսիաներ։ Այնտեղ, որտեղ պակասում է անմիջական դիտողութիւնը, անհրաժեշտ է դիմել մօդէլների, ռելիէֆների, պատկերների, քարտէզների, գլօբուսին և տելլուրիին։ Ամեն մի կարգաւորուած դպրոց պիտի ձեռք բերի իր յատուկ՝ աշխարհագրական օժանդակ պիտոյքների հաւաքածուն և մի փոքրիկ գրադարան աշխարհագրական բովանդակութիւն ունեցող գրքերից։ Աշակերտները ինքնուրոյն ընթերցանութեամբ պիտի լրացնեն այն թերի տեղեկութիւնները, որ ստանում են դասարանում ըստ դասացուցակի նշանակուած սուղ ժամանակամիջոցում։ Այս գրքերի մէջ ճանապարհորդութիւնները պիտի կարևոր տեղ բռնեն։ Առհասարակ ցանկալի է, որ ուսուցիչը միշտ ցոյց տայ, թէ ինչ դժուարութիւններով մարդկութիւնը ձեռք է բերել իր այժմեան ծանօթութիւնը երկրագնդի հետ, մանաւանդ որ երեխաները մեծ յափշտակութեամբ են լսում ճանապարհորդների արկածները. մանուկ հոգին միշտ ծարաւ է հերոսութեան։

Շատերը մեծ նշանակութիւն են տալիս քարտէզի գծագրութեանը։ Ի նկատի ունենալով, որ տարրական դպրոցը առհասարակ շատ քիչ ժամեր կարող է յատկացնել աշխարհագրութեան պէս մի կարևոր ա-

ուրկայի դասաւանդութեանը, ցանկալի է, որ այդ ժամերը որչափ կարելի է արդիւնաւէտ գործածուեն աշակերտների համար։ Ծննդավայրի և հայրենիքի քարտէզի նկարչութիւնով պէտի բաւականանալ դպրոցական այս աստիճանում, այն էլ չըպահանջել ճիշտ գծագրութիւն ըստ աշխարհագրական ցանցի, այլ միայն ըստ մի քանի պայմանական բնորոշ գծերի։ Այսպէս, Հայաստանի քարտէզի վրա կարելի է աչքի առաջ ունենալ Մասիսի վրայով հիւսիսից ուղիղ դէպի հարաւ անցնող գիծը, և այն հորիզոնական գիծը, որի վրա գտնւում է Ուրմիոյ և Վանայ լճերի հարաւային ափը, Եփրատի ծունկը, Ծովք լիճը և Կեսարիան։ Սակայն ուսուցիչը չըպէտք է չափազանց շատ ժամանակ կորցնի, պահանջելով խիստ ճշտութիւն այս տեսակ քարտէզներից։

Ծրագրի մէջ աշխարհագրական նիւթը դասաւորուած է ըստ աւազանների։ Այս դասաւորութիւնը շատ բնական է առաւելապէս մեր հայրենիքի աշխարհագրութեան համար, որովհետև մեր երկրում ամեն մի աւազան՝ լեռներով բաժանուած լինելով հարևան աւազաններից, մօտաւորապէս մի ամբողջութիւն է ներկայացնում իր առանձնայատուկ կլիմայով, բուսականութեամբ, ազգաբնակութեան պարապմունքներով և այլն։ Համաձայն գիտութեան նոր պահանջներին՝ ջրային տարրին համեմատաբար առաջնակարգ նշանակութիւն է տրուած ծրագրում։ Երկիրները խմբուած են ովկիանոսների և ծովերի շուրջը։ IV դասարանում, որտեղ ընդհանուր տեղեկութիւններ են տրւում աշխարհամասերի մասին, գերակշռող է նիւթի դասաւորութիւնը ըստ աշխարհամասերի· բայց V և VI դասարաններում, որտեղ աշակերտները ծանօթանում են առանձին պետութիւնների հետ, ծրագիրը հետևում է դասաւորու-

թեանը ըստ օվկիանոսների։ Երբեմն՝ այս սկզբունքից չշեղւելու համար՝ ստիպուած ենք լինում վերադառնալ միևնոյն նիւթին, օր. Ֆրանսիայի մասին խոսել թէ Միջերկրական ծովի շուրջը գտնւող երկիրների շարքում, և թէ վերջը՝ խօսելիս Ատլանտեան օվկիանոսի մասին, (Կանադայի մասին՝ թէ Ատլանտեան և թէ Խաղաղ օվկիանոսների մասին խօսելիս). բայց երկրորդ անգամ միայն ուշադրութիւն ենք դարձնում այն օգուտների վրա, որ օվկիանոսը բերում է այդ երկրին (առևտրի զարգացում, քաղաքների մեծանալը և այլն), և ամփոփում ու լրացնում ենք առաջ հաղորդած տեղեկութիւնները։ Այս սիստեմը բնական առիթներ տալով հին նիւթը թէ նոր տեսակէտից լուսաբանելու և թէ նոր նիւթի հետ կապակցելու համար, նպաստում է աշխարհագրական երևոյթների աւելի բազմակողմանի ուսումնասիրութեանը։

Մի ուրիշ հանգամանք ես դրդում է ընդունել ծրագրի առաջարկած դասաւորութիւնը։ Այս դասաւորութիւնը հնարաւորութիւն է տալիս զուգընթացաբար տանելու պատմութեան և աշխարհագրութեան ուսուցումը և ստեղծել առարկաների կենտրոնացում, որ այնպիսի մեծ նշանակութիւն ունի տարրական դպրոցների համար։ Աշխարհագրութեան դասատուն պիտի աչքի առաջ ունենայ պատմութեան ծրագրի պահանջները և շաղկապի իր աւանդածը պատմութեան դասերին աւանդածի հետ և, ընդհակառակը՝ պատմութեան ուսուցիչը պիտի նոյնն անի իր դասերին։ Աշխարհագրական նոր անունների հետ հաղորդւում են և պատմական անունները, մանաւանդ հայրենագիտութեան մէջ և առհասարակ հայոց պատմութեան հետ մերձաւոր առնչութիւն ունեցող վայրերի ուսումնասիրութեան ժամանակ։

Աշխարհագրության ուսուցումը սկսում է III դասարանից։ Այս աստիճանին դասաւանդութիւնը հիմնւում է գլխաւորապէս, իսկ սկզբում նաև բացառապէս անձնական անմիջական դիտողութիւնների վրայ, որ աշակերտները ձեռք են բերում զբօսանքների ժամանակ։ Ծննդավայրը իր մերձաւոր շրջակայքով պիտի ենթարկւի ամենալուրջ դիտողութեան։ Հայրենագիտութեան այս շրջանը բաժանւած է երկու մասի՝ ծննդավայր և մերձաւոր բնագաւառ։

Ծննդավայրի աշխարհագրական երևոյթները անմիջապէս դիտելով, աշակերտները—

ա) ուսումնասիրում են նրա մակերևույթի կազմութիւնը, ջրագրական պայմանները, կլիման, գետնի յատկութիւնները, բուսական և կենդանական աշխարհը, մարդկային բնակատեղիները, պարապմունքները և արհեստները, հաղորդակցութեան ճանապարհները, շարունակ աշխատելով ցոյց տալ երևոյթների միջև եղած պատճառական կապերը.

բ) Դիտում են ծննդավայրի երկինքը, արևի, լուսնի և աստղերի տեսանելի շարժումներն և փոփոխութիւնները, նաև մթնոլորտային երևոյթները։ Այս դիտողութիւններից մի քանիսի համար ուսուցիչը ստիպւած կը լինի երբեմն երեխաներին հաւաքել և արևի մայր մտնելուց յետոյ, բայց մեծ մասամբ կարելի է հարցեր տալ և պատւիրել, որ տանը իրենք դիտեն և իրենց դիտողութիւնները միւս օրը յայտնեն ուսուցչին։

գ) Ծննդավայրի ուսումնասիրութիւնը մանաւանդ լաւ միջոց է աշխարհագրական հասկացողությունները պարզաբանելու համար։ Արդէն այս դասարանում աշակերտները ծանօթանում են՝ թէ ինչ են աշխարհի կողմերը, հարթութիւն, սարահարթ, ստորահարթ, լեռ, գագաթ, լանջ, ստորոտ, հովիտ, կիրճ, գետ, ակունք, գետաբե-

րան, տաշտ, ափ, վտակ, լիճ, ծով, ծոց, նաւահանգիստ, բարեխառնութիւն, կլիմա, երկրագործութիւն, հովւութիւն, թափառական և նստակեաց կեանք, արհեստանոց, գործարան, արդիւնաբերութիւն և արդիւնագործութիւն, ներմուծող և արտահանող առևտուր, իշխանութիւն—հոգևոր և աշխարհական, կրթական հաստատութիւններ, գիւղ և քաղաք, փողոց, հրապարակ, շուկայ և այլն։ Այս դասարանի նպատակը չէ սակայն տալ ֆիզիքական և մաթեմաթիքական աշխարհագրութեան սիստեմատիկ դասընթացք։

դ) Այս դասարանից արդէն աշակերտները պիտի հետզհետէ սովորեն քարտէզ կարդալ. սիստեմատիկ վարժութիւններով ուսուցիչը նախապատրաստում է սաներին, որ քարտէզի պայմանական նշանների հետ նրանց մտքում կապւեն իրական, ռէալ մտապատկերներ։ Այս վարժութիւնների ժամանակ աշակերտները գծագրում են սենեակի, բակի, փողոցի, քաղաքում՝ թաղի, իսկ գիւղում՝ գիւղի յատակագիծը, գետի և ձորի ուղղութիւնը, լեռան լանջերը, ամեն մի զբօսանքին դիտած վայրերի, ապա և ամբողջ շրջակայքի քարտէզը ընդհանուր գծերով։ Լաւ է և շատ նպատակայարմար պատրաստել ծննդավայրի ռելիէֆը մաս-մաս, յետոյ ամբողջովին, աւազից կամ կաւից, և ապա անցնել քարտէզին։

Ծննդավայրից յետոյ աշակերտները ծանօթանում են մերձաւոր բնագաւառի հետ։ Բնագաւառ ասելով՝ պէտք է վերցնել գաւառը ոչ թէ արւեստական, վարչական սահմաններով, այլ բնական կազմութեամբ, օրինակ՝ Կուրի վերնագաւառը (Արդահան, Ախալքալաք, Ախալցխա), Կարսաչայի հովիտը, Ապարանը, Զանգեազուրը, Լօռին, Փամբակը և այլն։ Պէտք է կանգ առնել մակերևոյթի կազմութեան, կլիմայի, ջրագրական և

լեռնագրական պայմանների, բերքի, արդիւնագործութեան, բնակիչների ազգութեան և կրօնի, քաղաքների և գլխաւոր գիւղերի, ճանապարհների վրա և ցոյց տալ, թէ բացի եղած պարապմունքներից, այլ ևս ինչով կարելի է պարապել այդ գաւառում։

Աշակերտները պիտի կարողանան արտանկարել բնագաւառի քարտէզը և հասկանալ դրա բոլոր նշանները։ Եթէ այդտեղ պատահում են այնպիսի աշխարհագրական հասկացողութիւններ (օրինակ՝ ծով, նաւահանգիստ, հրաբուխ, հովիտ, ձիւնապատ գագաթ, կիրճ), որ երեխաները չեն կարողացել իւրացնել ծննդավայրի դիտողութիւնների հիման վրա, անհրաժեշտ է, որ այդ տեսակ հասկացողութիւնները թանձրացնելու համար ուսուցիչը դիմի օժանդակ պարագաների՝ մօդէլների, ռելիէֆների, նկարների, տիպար պատկերների և այլն։

Ցանկալի է, որ III դաս. դասընթացքը վերջանայ Անդրկովկասի և մերձաւոր երկիրների քարտէզի հետ ընդհանուր ծանօթութեամբ։

IV դասարանում արդէն լրացւում են և ամփոփւում են գլխաւոր տեղեկութիւնները ֆիզիքական և մաթեմաթիքական աշխարհագրութիւնից։ Բայց այս տեղեկութիւնները հաղորդւում են ոչ թէ յաջորդական, սիստեմատիկ դասընթացքի ձևով, այլ բուն աշխարհագրական նիւթի (Անդրկովկասը մերձաւոր երկիրներով և աշխարհիս բոլոր մասերը) հետ զուգընթացաբար։ Այսպէս օրինակ, հրաբուղխի, նրա մասերի և կազմութեան վրա մանրամասն խօսւում է Արագածի կամ Մասիսի առիթով, ծովային հոսանքների, տեղատւութեան և մակընթացութեան մասին — Ատլանտեան կամ Խաղաղ ովկիանոսի առիթով։

Հայրենագիտութեան (լայն իմաստով)՝ այս բաժան-

մունքի բուն աշխարհագրական նիւթին դիմելուց առաջ անհրաժեշտ է նախ տալ աշակերտներին ամփոփ գաղափար երկրագնդի, կլիմայական գօտիների, աշխարհամասերի և ովկիանոսների մասին, որպէս զի նրանց գիտակցութեան մէջ պարզ լինի իրենց հայրենիքի տեղը երկրագնդի վրա։ (Ծանօթութիւն գլօբուսի հետ)։

Հայրենիքի աշխարհագրութեան այս բաժինը անցնելիս էլ աչքի առաջ պէտք է ունենալ գլխաւոր մասերի մակերևոյթի կազմութիւնը, կլիմայական պայմանները, բնական հարստութիւնները, գլխաւոր պարապմունքները, ճանապարհները, բնակիչների ազգութիւնն ու կրօնը, բնակութեան գլխաւոր կենտրոնները և վարչական բաժանումը։ Ժամանակակից անունների հետ, ինչպէս վերև ասած է, միաժամանակ պէտք է տալ և հայկական պատմական անունները։ Դասընթացքը սկսւում է բնագաւառին մերձաւոր վայրերից։

V և VI դասարաններում դասընթացքը կրում է աւելի սիստեմատիկ բնաւորութիւն և ընդգծում է գլխաւորապէս աշխարհագրական երևոյթների միջև եղած պատճառական կապակցութիւնը (ծովի մերձաւորութեան ազդեցութիւնը կլիմայի, բուսականութեան, պարապմունքների վրա, լեռնաշղթաների ուղղութեան նշանակութիւնը, պատմական կեանքի թողած հետքերը, հարևանների ազդեցութիւնը ևայլն)։ Զուգընթացաբար հաղորդւում են ամեն յարմար առթին ծանօթութիւններ կրօնի, պետական կազմակերպութեան մասին, և առհասարակ կուլտուր-աշխարհագրական բնորոշ տեղեկութիւններ, բայց ոչ ճնշիչ մանրամասնութիւններով։ Անցած նիւթը վերամշակւում է վերջը, ըստ ովկիանոսների անցնելուց յետոյ, նաև ըստ աշխարհամասերի, իբրև անցած նիւթի նոր ձևով կրկնութիւն։ Աշակերտներին մեծ բաւականութիւն էն պատճառում երևա-

կայական ճանապարհորդութիւնները մէկ տեղից միւս տեղ. այս դէպքում չըպէտք է բաւականանալ լոկ աշխարհագրական անունների շարահիւսութեամբ, այլ պէտք է աշխատել, որ պատմողը նկարագրի և ճանապարհին պատահող վայրերը։ Այսպիսի վարժութիւնները պատեհ առիթներ են ներկայացնելու օգուտ քաղելու առանձնակի, անհատական ընթերցանութեամբ ձեռք բերած տեղեկութիւններից։ Այս եղանակով ուսանող սերնդի մէջ վառ կըպահուի հարցասիրութիւնը, որ այնքան անհրաժեշտ է, որպէսզի դպրոցի չորս պատերի միջից դուրս գալուց յետոյ էլ պատանիները ինքնաշխատութեամբ լրացնեն այն սահմանափակ աշխարհագրական գիտելիքները, որ կարող է նրանց տալ տարրական դպրոցը 4 տարւայ ընթացքում, շաբաթական սակաւաթիւ ժամերով։

## Ծ Ր Ա Գ Ի Ր

### Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Հայրենագիտութիւն. ա) ծննդավայր և բ) մերձաւոր բնագաւառ։ (Մանրամասնութիւնները տես բացատրութեան մէջ)։

### Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Ա. Գլխաւոր տեղեկութիւններ մաթեմատիքական և ֆիզիքական աշխարհագրութիւնից։

Երկրագունդ. առանցք և բևեռներ. երկրի շարժւելը առանցքի և արևի շուրջը և այս շարժումներից առաջ եկող երևոյթները երկրիս երեսին.

Գլոբուս. հասարակած. արևադարձային գծեր, բևեռային շրջաններ, միջօրէականներ։ Կլիմայական գօ-

տիներ։ Տեղի երկայնութիւնը և լայնութիւնը։ Կիսագնդեր։

Ջրի և ցամաքի բաշխումը երկրագնդի վրա։

Մայր-ցամաք, կղզի, թերակղզի, պարանոց։ Աշխարհի մասերը և նրանց համեմատական մեծութիւնը։

Հարթութիւններ—ստորահարթ, սարահարթ։ Լեռնաշղթայ, լեռնաշխարհ, լեռնահանգոյց, հրաբուղխ։

Ծովի յատակի կազմութիւնը — ծանծաղուտներ, ծովաժայռեր։ Ծովային հոսանքներ։

Օդ. բարեխառնութեան հորիզոնական և ուղղահայեաց բաշխումը. օդի շարժումներ—հողմ։ Քամիների և ծովային հոսանքների նշանակութիւնը։ Տեղատւութիւն և մակընթացութիւն։

Ջուրը ցամաքի վրա. գետ և վտակ. գետի աւազան. Ջրաբաշխական գծեր։ Յաւիտենական սառուցի աշխարհ, ձիւնասահման, սառցարան, սառցադաշտ։

Կլիմա. կլիմայի կախումը աշխարհագրական լայնութիւնից, մակերևոյթի կազմութիւնից և բարձրութիւնից, տիրող քամիներից ու ծովային հոսանքներից։

Բոյսերի և կենդանիների տարածւելը ըստ աշխարհագրական լայնութեան և բարձրութեան։

Մարդ. մարդկային ցեղերի բաժանումը. (աւելի մանրամասն հնդկաեւրոպական ցեղի ճիւղերի մասին)։

Բ. Անդրկովկաս եւ սահմանակից երկիրներ. (համառօտ աշխարհագրական տեսութիւն, գլխաւորապէս ֆիզիքական կազմութեան տեսակէտից)։

1. Անդրկովկաս։— Մեծ և Փոքր Կովկասեան և Արարատեան շղթաներ։ Գլխաւոր աւազաններ։ Մերձաւոր ծովեր։

Կուր, Արաքս և Ռիօն գետերի հովիտները։

Փոքր Կովկաս. Նրա բարձրավանդակները, անցքերը և կիրճերը. հարաւային և հիւսիսային լանջերը։ Արագած։ Սևանայ լիճ։

Արարատեան շղթայ. Նրա մասերի առանձին անունները, հիւսիսային և հարաւային լանջերը. Մասիսներ—Մեծ և Փոքր։

Մեծ Կովկասի լեռնաշղթայ. Նրա հարաւային և հիւսիսային լանջերը, կիրճերը, անցքերը։ Կազբէկ և Էլբրուս։

2. Ռուսաստան։ — Սահմանները. մերձաւոր ծովերը, գլխաւոր լեռները, գետերը։ Բաժանումը ըստ բուսականութեան—տունդրա, անտառների, երկրագործական և «ստեպների» գօտիներ։ Մայրաքաղաքները և գլխաւոր արդիւնաբերական և առևտրական կենտրոնները։

3. Ասիական Տաճկաստան։ — Արևմտեան Տօրոսի, Ալևիլեան Տօրոսի և Զագրօշի շղթաներ։

Կարնոյ և Ալաշկերտի բարձրավանդակներ։

Արածանիի, Եփրատի և Վանայ լճի աւազաններ։

Տիգրիսի վերնագաւառ։

Կիլիկիա և Զէյթուն։

(Անատօլիական բարձրավանդակ, Միջագետք, Պաղեստինէ, Արաբիա)։

4. Պարսկաստան։ — Ղարաբաղ, Արաքսի աջակողմեան վտակների և Ուրմիոյ լճի աւազանները։ (Իրանի բարձրավանդակ։ Հարաւային Պարսկաստան)։

Գ. Համառօտ աշխարհագրական տեսութիւն աշխարհի բոլոր մասերի։ Մակերևոյթի կազմութիւնը, գլխաւոր բարձրութիւններն ու հարթութիւնները, ծովերը, ծոցերը, նեղուցները, թերակղզիները, կղզիները, պարանոցները։ Կլիման։ Բուսականութիւնը և առանձնայատուկ կենդանիները։ Ազգաբնակութիւնը։ Քաղաքական բաժանումը։

Ծանօթութիւն։ Աւելի մանրամասն անցնել յաւիտենական սառուցի (բևեռային) և յաւիտենական տա-

*քուԹեան (անդրադարձային) աշխարհները և համեմատաբար աւելի շատ տեղեկուԹիւններ տալ Հնդկաստանի, Չինաստանի, Ճապոնի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Անգլիայի և Հիւսիսային Ամերիկայի Միացեալ Նահանգների աշխարհագրուԹեան մասին։*

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաԹական 2 դաս*).

*Սիստեմատիկ դասընԹացք*

### 1. Ռուսաց կայսրութիւն։

*ՏարածուԹիւնը, սահմանները և նրանց առևտրական ու պատերազմական նշանակուԹիւնը։—ԿայսրուԹեան մասերը։ Եւրոպական և Ասիական Ռուսաստան։ Կովկաս։*

### ա. Անդրկովկաս.

*Ընդհանուր տեսուԹիւն.—Երկրի տարածուԹիւնը, ցամաքային և ծովային սահմանները։ ՄակերևոյԹի կազմուԹիւնը։ Լճերն ու գետերը։ Սև և Կասպից ծովերը։ ԱզգաբնակուԹիւնը։*

*Յատուկ տեսուԹիւն։—Մեծ ու Փոքր Կովկաս։ Արարատեան շղԹայ։ (Այս շղԹաների կազմուԹիւնը—ձևական և երկրաբանական, աշխարհագրական նշանակուԹիւնը. մասերը, գագաԹները, լանջերի բնաւորուԹիւնը, մանաւոր հովիտներն և սարահարԹերը, անցքերն ու կիրճերը. հանքային հարստուԹիւնները. բուսական և կենդանական աշխարհը)։—Առանձին գետերի աւազանները իրենց մասերով։ 1) Կասպից ծովի աւազանները—Կուրի և Արաքսի աւազանները։ (Այս աւազանների աշխարհագրական նկարագրուԹիւնը, մասերը, կողմնակի հովիտներն ու փոքր աւազանները, բնական հարստուԹիւնները. բնակիչների պարապմունքը.*

ճանապարհները (երկաթուղիներն և գլխաւոր խճուղիները)։ Վարչական բաժանումը։ Գլխաւոր վարչական և առևտրական կենտրոնները։ Նշանաւոր պատմական վայրեր։

### բ. Եւրոպական եւ Ասիական Ռուսաստան.

Մակերևոյթի կազմութիւնը, գլխաւոր լեռները, բարձրութիւնները և ցածրութիւնները։ Լճերն ու գետերը։ Կլիման։ Բուսականութիւնը և հանքային հարստութիւնները։ Գլխաւոր ջրային և երկաթուղային ճանապարհները (Մեծ Սիբիրական գիծ, Վլադիկավկազեան գիծ)։ Ազգաբնակութիւնը։ Քաղաքական կազմակերպութիւնը։ Արդիւնաբերական և արդիւնագործական շրջանները։ Արտահանութիւնն և ներմուծումը (մանաւանդ Անդրկովկասի վերաբերմամբ)։ Նշանաւոր քաղաքները։

### 2. Պարսկաստան։

Սահմանները. տարածութիւնը, ազգաբնակութիւնը. քաղաքական կազմակերպութիւնը և բաժանումը։

ա. Հիւսիս-արևմտեան Պարսկաստան (գրեթէ նոյնպիսի մանրամասնութիւններով և սխեմով, որպէս Անդրկովկասը)։ Արաքսի աջակողմեան վտակների աւազանը։ Ուրմիոյ աւազանը։ Ղարադաղ։.

բ. Իրան և Հարաւային Պարսկաստան։—Ժողովրդի տնտեսական և քաղաքակրթական վիճակը։ Գլխաւոր ճանապարհները։ Նշանաւոր քաղաքները։

### 3. Տաճկաստան։

Սահմանները. տարածութիւնը. ազգաբնակութիւնը, քաղաքական կազմակերպութիւնը և բաժանումը։

Հայկական լեռնաշխարհ.—(գրեթէ նոյնպիսի մանրամասնութիւններով և սխեմով, որպէս և Անդր-

*կովկասը)։ Գլխավոր լեռները և նրանց մասերը։ Արածանիի, Վանայ լճի, Եփրատի և Տիգրիսի աւազանները։ Դերսիմ, Սասուն։—Զէյթուն։*

*Միջագետք և Արաբիա։*

4. Միջերկրական ծովի շուրջը գտնվող երկիրները:

*Միջերկրական ծովի տարածութիւնը և խորութիւնը։ Նրա յատակի կազմութիւնը, մասերը, բուսական և կենդանական աշխարհը, ազդեցութիւնը կլիմայի վրա։ Միջերկրական ծովի նշանակութիւնը։*

*Տաճկաստան (Պաղեստինէ, Կիլիկիա, Փոքր Ասիա, Եւրոպական Տաճկաստան)։ Բալկանեան թերակղզու միւս պետութիւնները։—Չերնոգորիա, Սերբիա, Բուլղարիա, Ռումինիա, Յունաստան։ Իտալիա։ Ֆրանսիա—(առաւելապէս հարաւային)։ Սպանիա։ Մարօկկօ. Ալժիր. Տունիս. Եգիպտոս։*

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաթական 2 դաս*).

1. Ատլանտեան ովկիանոսի շուրջը գտնվող երկիրները։

*Ատլանտեան ովկիանոսի տարածութիւնը և մասերը, խորութիւնը և յատակի կազմութիւնը, մակընթացութիւնը և տեղատուութիւնը, հոսանքները։ Բուսական և կենդանական աշխարհը։ Ազդեցութիւնը կլիմայի վրա։ Նշանակութիւնը։*

*Պօրտուգալիա. Ֆրանսիա (առաւելապէս հիւսիսային). Բելգիա և Հոլլանդիա. Դանիա. Գերմանիա. Շվէյցարիա. Աւստրօ-Ունգարիա. Շվեդիա. Նորվեգիա. Անգլիա. Արևմտեան և Կենտրոնական Աֆրիկա։ Անգլիական կալուածքները Հիւսիսային Ամերիկայում.*

*Հիւսիսային Ամերիկայի Միացեալ Նահանգները. Մեքսիկա. Միջին Ամերիկա. Հարաւային Ամերիկայի արեւելեան պետութիւնները։*

**2. Մեծ կամ Խաղաղ օվկիանոսի շուրջը գտնւող երկիրները:**

*Խաղաղ օվկիանոսի տարածութիւնը և մասերը, խորութիւնը և յատակի կազմութիւնը, մակընթացութիւնը և տեղատւութիւնը, հոսանքները։ Բուսական և կենդանական աշխարհը։ Ազդեցութիւնը կլիմայի վրա. Նշանակութիւնը։*

*Հարաւային Ամերիկայի արևմտեան պետութիւնները։ Ճապոն։ Չինաստան։ Հնդկաչին։ Ասիական կղզիները։ Աւստրալիա և Օվկիանիա։*

**3. Հնդկական օվկիանոսի շուրջը գտնւող երկիրները։**

*Հնդկական օվկիանոսի տարածութիւնը և մասերը, խորութիւնը և յատակի կազմութիւնը, մակընթացութիւնը և տեղատւութիւնը, հոսանքները։ Բուսական և կենդանական աշխարհը։ Ազդեցութիւնը կլիմայի վրա։ Նշանակութիւնը։*

*Հնդկաստան։ Աֆղանիստան։ Բելուջիստան։ (Հարաւային Պարսկաստան)։ Արաբիա։ Արևելեան Աֆրիկայի երկիրները։*

Ծանօթութիւն. *Ամեն մի առանձին պետութեան աշխարհագրութիւնը անցնելիս պիտի հետևել միատեսակ նկարագրական ծրագրի, այն է՝ 1. աշխարհագրական դիրքը. 2. սահմանները. 3. լեռնագրութիւնը. 4. ջրերը. 5. կլիման. 6. բուսական և կենդանական աշխարհը. 7. երկրի քաղաքական, տնտեսական և քաղաքակրթական վիճակը. 8. բնակիչների ազգագրական բնորոշումը։—Նոր աշխարհամասի աշխարհագրութեանը դիմելիս՝ պէտք է կրկնել* IV *դասարանում սովորած ընդհանուր տեսութիւնները։*

# V. ԻՐԱԶՆՆՈՒԹԻՒՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

*Իրազննութիւնը կոչւում է նաև «դիտողական ուսումն», որ ծագում է «դիտողութիւն» գաղափարից. իւրաքանչիւր իր կամ առարկայ պէտք է զննւի կամ դիտողութեան ենթարկւի, այսինքն մանկան տեսանելիքի կամ նաև միւս զգայարանների միջնորդութեամբ ըմբռնւի։ Եթէ օրինակ, մանուկն ուզում է մի ծաղիկ դիտել, նա պէտք է աչքերով լաւ զննի այդ իրը, ձեռքով շօշափի և քթով հոտոտի։ Մանկավարժութեան հայր Պեստալոցցուց սկսած՝ դիտողութիւնը համարւել է իւրաքանչիւր ուսուցման հիմքը։ Այդ պատճառով էլ շատ մանկավարժներ «դիտողական ուսումը» չեն ընդունում իբրև ուսուցման առանձին առարկայ. դրանց տեսութեամբ իւրաքանչիւր ուսուցման առարկայ պէտք է ունենայ իր դիտողական մասը։ Ներկայ ծրագրում անհրաժեշտ համարւեց «դիտողական ուսումն» ընդունել իբրև դասաւանդութեան առանձին առարկայ Ա. և Բ. դասարաններում և կենտրոնացնել մէկ ուսուցչի ձեռքում։*

*Իրազննութեան նպատակն է մանուկների արդէն ունեցած դիտողութիւնները ճշտել, ընդարձակել, զգայարանները սրել, նոր դիտողութիւններ անել տալ, գաղափարները պարզել և խօսակցութիւնը կանոնաւորել։ Դիտողական ուսումը կոչւում է նաև «հայրենագիտութիւն», որովհետև դիտելու իրերը գտնւում են մանուկների հայրենիքում, կամ աւելի ճիշտ ասած՝ ծնընդավայրում, նրա անմիջական շրջակայքում։ Բնական և արւեստական իրերը դիտւում, զննւում են դասարանում, տանը, զբօսանքների և դպրոցական ճանա-*

պարհորդությունների ժամանակ։ Աշակերտները պետք է խոսեն լիակատար նախադասություններով, բայց կարճ և ամփոփ, բարձր ձայնով և որոշ ու պարզ արտասանությամբ։

Իրազննությունը պետք է զարգացնի նաև մանկան հասկացողությունը, երևակայությունը բորբոքի, հետաքրքրություն զարթեցնի և զգացմունքը կրթի։ Իրազննությունը պետք է նախապատրաստական, վերլուծական նյութ մատակարարի դասավանդության այլ առարկաների համար, գլխավորապես լեզվի, աշխարհագրության, բնական գիտությունների, պատմության և այլն։ Գիտություններից այս տարրերը ավանդվում են ազատ կերպով, միմեանցից անկախ, առանց սիստեմատիքական դասավորության։

Իրազննության ծրագրի նյութն առնված է հայ մանուկների անմիջական շրջապատից, և կարելի է հետևյալ խմբերի բաժանել.—ա) արհեստական իրեր, բ) բնության երևույթներ, գ) բույսեր և կենդանիներ, դ) մարդ, ե) ընտանիք, զ) պարապմունք, է) աշխարհագրական գաղափարներ, ը) տեղական զրույցներ և այլն։

Արհեստական իրեր դիտելիս՝ պետք է քննության ենթարկել առարկան, որոշել նրա բաղկացուցիչ մասերը, ինչ նյութերից և ում ձեռքով շինված լինելը, առանձնայատկությունները և գործադրությունը։ Բնության երևույթների մասին խոսելիս՝ պետք է բացատրել դրանց ինչպես և ինչից առաջանալը, փոխադարձ յարաբերությունն ու կապը, տված օգուտն ու վնասը։ Կենդանիները դիտելիս՝ պետք է նրանց արտաքինը նկարագրել, որոշել նրանց ինչով և ինչպես կերակրվելը, ապրելու վայրը, բնորոշ առանձնայատկությունները, տված օգուտն ու վնասը։ Բույսերը քննելիս՝ պետք է տալ նրանց արտաքին նկարագրությունը,

էական մասերի որոշումը—արմատ, բուն կամ ցողուն, տերև, ծաղիկ—, պէտք է բացատրել աճման եղանակը, ջրի և լոյսի նշանակութիւնը դրանց համար, տւած օգուտն ու վնասը։ Նոյն ձևով պէտք է պարզել և մանուկներին գիտակցաբար ըմբռնել տալ նաև միւս գաղափարները։ Անհրաժեշտ չէ, որ ծրագրի մէջ առաջ բերւած նիւթերի դասաւորութիւնը ճշտութեամբ պահպանւի. ուսուցչին պէտք է ազատութիւն տրւի իւրաքանչիւր դիտողութեան համար յարմար ժամանակ գտնելու և շրջապատող հանգամանքներն ի նկատի ունենալու։ Առաջին և երկրորդ տարւայ նիւթերը նոյնպէս կարող են միմեանց փոխարինել՝ ըստ տեղական հանգամանքների և ժամանակի պահանջի։

## ԾՐԱԳԻՐ

### Ա. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

1. Դասարան.
2. Դասարանում գտնւող իրերը.
3. Աջ, ձախ, վերև, առաջ, ետև.
4. Բակ (սանդուղք, պարտէզ, եթէ կայ), սահման.
5. Արև, լոյս և ստւեր, արևի ծագելը, մայր մտնելը, առաւօտ, կէսօր, երեկոյ, գիշեր, կէս գիշեր.
6. Արևելք, արևմուտք, հարաւ և հիւսիս.
7. Տարւայ եղանակները, ամիսները, շաբաթւայ օրերը, օրւայ ժամերը, ժամացոյց.
8. Աստղեր. լուսին. ծնունդ լուսնի, կիսալուսին, լրումն լուսնի.
9. Ամպեր, ծիածան, որոտումն, փայլակ, կայծակ, քամի, փոթորիկ.
10. Գոլորշի, ցօղ, եղեամն, անձրև, ձիւն, կարկուտ, սառոյց.

11. Դպրոց, փողոց, բնակարան, գոմ, փարախ.

12. Այգեքաղ, գինեգործութիւն, դաշտային աշխատանք.

13. Աղբիւր, առու, գետ, գետափ (կամուրջ, ջրաղաց, եթէ կայ), լճակ (եթէ կայ).

14. Դաշտ, բլուր. սար, հովիտ, ձոր.

15. Խոտ, ծաղիկ, բանջար, ծառ, պարտէզ, այգի, անտառ.

16. Ընտանի կենդանիներ—ձի, էշ, ջորի, կով, եզ, գոմէշ, ոչխար, ուղտ, այծ, շուն, կատու, մեղու, շերամ (եթէ կայ).

17. Թռչուններ (հաւ, սագ, բադ, հնդկահաւ, ճընճղուկ, աղաւնի, ծիծեռնակ, ագռաւ).

18. Մարդ—արտաքին նկարագրութիւն, սնունդ, մաքրութիւն, առողջապահութիւն, զգեստ, անկողին, ամանեղէն.

19. Ընտանիք՝ անդամների դերը և փոխադարձ յարաբերութիւնը—հայր, մայր, պապ, տատ, ծառայ, աղախին։

20. Ազգակցական անունների բացատրութիւնը —քեռի, տալ, աներ, տագր և այլն։

## Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)։

1. Լոյս, ճրագ, լապտեր, լամպ, մոմ, ձէթ, նաւթ.

2. Կրակ, բոց, ջերմութիւն, կերակուր եփելը, սենեակ տաքացնելը.

3. Այրւող նիւթեր՝ փայտ, ածուխ, աթար, քարածուխ։ Մոխիր, վառարան.

4. Դրամ՝ պղնձի, արծաթի, ոսկու. Թղթադրամ, զանազան արժէքի դրամներ.

5. Ցամաքային ճանապարհներ՝ շաւիղ, կածան, ձիու, սայլի ճանապարհ.

6. Խճուղի, երկաթուղի։

7. Ջրային ճանապարհ՝ նաւակով, նաւով, շոգենաւով (եթէ կայ)։

8. Քաղաք, գիւղ, դրանց թաղերը։

9. Քաղաքի նշանաւոր շէնքերը, եկեղեցիները, թատրոն, գործարան և այլն։

10. Պատմական յիշատակարաններ, արձան, արձանագրութիւն։

11. Վանք, դղեակ, ամրոց, գերեզմանատուն, աւերակներ։

12. Պարապմունք՝ արհեստներ և արհեստանոցներ—դերձակ, կօշկակար, հացթուխ, դարբին և այլն։

13. Երկրագործութիւն՝ հողի մշակելը—վարել, ցանել, հնձել, կասել, աղալ և այլն։

14. Գործիքներ՝ գութան, խոփ, մանգաղ, գերանդի, կամ, թի, եղան և այլն։

15. Մշակելու հացահատիկներ՝ ցորեն, գարի, կորեկ, բրինձ, սիմինդ, բամբակ, վուշ և այլն։

16. Խաշնարածութիւն՝ բուրդ, կաթ, մածուն, սեր, իւղ, պանիր և այլն։

17. Որսորդութիւն՝ որսի շուն—բարակ. որսի կենդանի—նապաստակ, եղջերու, աղաւնի, կաքաւ,—նաև գայլ, աղուէս, արջ։

18. Ձկնորսութիւն՝ կարթ, ցանց, ուռկան, օչխ (թարփ), ձուկ որսալու տեղական եղանակները։

19. Տեղական սովորական ձկների տեսակները։

20. Ժողովրդական, տեղական տօներ, ուխտագնացութիւններ։

21. Տեղական վայրերի հետ կապուած զրոյցներ, պատմութիւններ, առասպելներ, աւանդութիւններ։

22. Գիւղի կամ քաղաքի շրջակայքը— դպրոցական ճանապարհորդութիւն։

23. Գաղափար մասշտաբի մասին.

24. Դասարանի, բակի, դպրոցի, եկեղեցու և փողոցի պարզ յատակագիծը։

---

# VI ԲՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Բնական գիտութիւնները մեր տարրական դըպրոցներում պէտք է էապէս հայրենագիտութեան բնաւորութիւն ունենան՝ բառիս ընդարձակ նշանակութեամբ։ Հետևաբար՝ հեռաւոր, օտար երկիրների բնական իրերն ու երևոյթները պէտք է միայն այն չափով ընդունուեն ծրագրի մէջ, որ չափով որ նրանք նպաստաւոր կըլինեն այս մտաշրջանների լրացմանը։ Ուրեմն օտար երկիրների արտադրութեանց մենք չըպէտք է նեղ մտքով վերաբերուենք. այն նիւթերն ու իրերը, որոնք մեր կեանքում շատ գործածական բաներ են կամ օտար լինելով հանդերձ՝ առանձին հետաքրքրութիւն են շարժում, պէտք է բնականաբար մտնեն հայրենագիտութեան շրջանը։

Մանուկների նախադպրոցական կեանքից յետոյ առաջին երկու տարիներն է, նրանց՝ բնութիւնից ստացած ու ստանալիք տպաւորութիւնները տակաւին չեն կարող ունենալ այն հարստութիւնը ու խորութիւնը, որ մենք իսկական բնական գիտութիւն աւանդէինք այդ հասակի մանուկներին։ Ուստի հարկաւոր կըլինի Ա. և Բ. դասարաններում այդ գիտութեան նախաշաւղի մէջ մտցնել նրանց։ Այս դասընթացքը սովորաբար անուանւում է իրագիտութիւն կամ հայրենագիտութիւն, որ իր մէջ ամփոփում է աշխարհագրական (նաև

տիեզերագրական), բնագիտական—աշխատագիտական տարրը դեռ անանջատ, այսպէս ասած՝ իրանց նախնական վիճակում։

Այս ուսուցման երրորդ տարին բնական պահանջ կըզգացւի այս գիտելիքների շրջանները զատել սահմանահատելու։ Այս պատճառով մենք պէտք է այդ տարրերը իրարից անջատենք և իւրաքանչիւրն յատուկ դպրոցական սիստեմով աւանդենք։ Բայց այս շրջանումն էլ այդ սիստեմներն իրարից այնպէս անջատ-անջատ չըպէտք է աւանդենք, որ մեր սաներն այդ իրերն ու երևոյթները իրարից անկախ բաներ համարեն։ Մենք հետամուտ պէտք է լինենք ոչ թէ բոյսերի, կենդանիների և այլն մասնագիտական սիստեմները տալու, այլ դրանց մէջ եղած առնչութիւնները դիտել-հասկանալում առաջնորդելու։ Բնական իրերը այն չափով սիստեմի տակ պէտք է դրւեն, որ չափով որ հետզհետէ աւանդւած օրինակները այս տեսակէտով դասաւորելու առիթներ կըներկայացնեն։ Բնական գիտութիւններն արդէն այնքան առաջադիմել են և ողջամիտ մանկավարժութեան հետևորդները այնքան բուռն հարցասիրութեամբ հետամուտ են եղել այդ նոր հոսանքին, որ մենք հնարաւորութիւն ունենք մեր սաներին բնութեան յայտնութիւններին բազմակողմանի ճանապարհներով մօտեցնելու։ Քանի որ բնական իրերն ու երևոյթները սերտ շաղկապւած են իրար հետ, նրանց ըմբռնելու, իւրացնելու և գործադրելու համար պէտք է մեր սաներին մտցնենք այդ երևոյթների բազմակողմանի պատճառաբանութեան մտաշրջանները։ Բնական իրերի և երևոյթների առնչութիւնները երևան են գալիս նրանց միացնող որոշ միջավայրերում, որոշ խմբակի համակեցութեան մէջ։ Այս

պատճառական կապակցութեան հիմնական ցուցմունքները կամ փաստերը հետևեալներն են.

1. Առանձին օրգանական էակի մէջ.—

ա. առնչութիւն գործիքի (գործարանի, օրգանի) և անելիքի միջև.

բ. առանձին առանձին օրգաններն միջև.

գ. որ և է էակի ամբողջական կազմութեան և նրա խաղացած դերի միջև բնութեան տնտեսութեան շրջանում.

դ. մարմնի կազմութեան և կեանքի եղանակի միջև,

ե. մարմնակազմութեան և կեանքի պայմանների միջև և

զ. կեանքի զանազան գործունէութեանց միջև։

2. Առանձին օրգանական էակների միջև եւ

3. Օրգանական ու անօրգանական էակների միջև։

Այս բոլոր կէտերից առանձին ուշադրութեան պիտի արժանանայ տարրական դպրոցում մարմնակազմութեան և կեանքի եղանակի միջև գոյութիւն ունեցող առնչութեան լուսաբանութիւնը։ Բնական երևոյթների այս պատճառականութեան հանգամանքները քննութեան առնելու առիթներ ներկայացնելով՝ մենք միևնոյն ժամանակ ապահովեցրած կլինէինք բնական գիտելիքներին վերաբերեալ մտապատկերների անընդհատ հոսանքը։ Մեր այս նպատակին կըհասնենք այն ժամանակ, երբ որ ամեն մի դասարանի ծրագրի համար այնպիսի նիւթ կընտրենք, որոնք որ բնական կապերով միացած կըլինեն իրար հետ։

Բնական գիտութեանց ծրագրի մէջ պէտք է մըտցնենք նաև աշխատագիտական տարրը նախ՝ որպէս ցոյց տանք մարդու միջամտութեան ազդեցութիւնները բնական իրերի և երևոյթների վրա, որպէսզի ապա հարցասիրութիւն առաջացնենք սաների մէջ ընտրելիք

ապագայ գործունէութեան ճանապարհները հարթելու նպատակով։ Տեխնիկական արտադրութեանց նիւթերի և պատրաստելու եղանակի մասին տարրական գաղափարներ անհրաժեշտ են այդ իրերը նաև նպատակայարմար կերպով գործածելու համար։ Աշխատագիտութիւնը իր մէջ ամփոփում է հանքաբանութիւնը, քիմիան, ֆիզիքան իբրև բնական նիւթերի և ուժերի վերաբերեալ գիտելիքներ, որոնց գործադրութիւնը արտայայտւում է արհեստների մէջ։ Բնական գիտութեանց մնացած երկու ճիւղերը՝ բուսաբանութիւնը և կենդանաբանութիւնն էլ մենք միացնում ենք իրար հետ իբրև կենսաբանական գիտելիքներ։

Քիմիան տարրական դպրոցներում աւանդւում է առանց ատոմիստիքական թէորիայի օժանդակութեանը դիմելու։ Անօրգանական քիմիայի պրոցէսների մասին մենք կարող ենք գաղափար տալ մեր աշակերտներին գլխաւորապէս հանքաբանութեան մէջ, իսկ օրգանական պրոցէսների մասին՝ բուսաբանութեան, կենդանաբանութեան, մանաւանդ առողջապահութեան մէջ։ Արհեստագիտութիւնը (տեխնօլօգիան) իբրև գիտելիք ներկայ ծրագրի մէջ պէտք է տեղ բռնի այն չափով, որ չափով որ անհրաժեշտ է հանքային, բուսական և կենդանական կարևորագոյն նիւթերի մշակման եղանակները տարրական ձևով բացատրելու համար։ Մեր բնակարանը, խոհանոցը, այգին, դաշտը և այլն բազմակողմանի առիթներ են ներկայացնում այսպիսի գործնական տեղեկութիւններ տալու. Գեօգրաֆիան միներալօգիայից տարրական ծրագրում մենք չենք զատում, իսկ երկրաբանութիւնը վերապահում ենք աշխարհագրութեանը։

Ծրագրի առաջարկած նիւթերը համախմբուած են ըստ որոշ միջավայրերի, բայց այդ ամենը թէ՛ թւի,

թէ որակի և թէ մշակման տեսակէտներով իսկութեամբ աւանդել, իհարկէ՝ կարելի չի լինի ամեն տեղ ու ամեն հանգամանքներում։ Ամեն մի դասարանում տարւայ մէջ պէտք է ուսուցանել 7—8 կենդանի, այդքան էլ բոյսեր ու հանքեր։ Նշանակւածներն ընտրւած են իբրև աւելի հետաքրքրական նիւթեր։ Ի հարկէ կան և ուրիշները, որոնք՝ նայելով տեղական հանգամանքներին՝ կարող են փոխարինել առաջարկւածների մի մասը։ Երբ խօսք լինի մի ընտանի կենդանու, թռչնի... մասին, պէտք է առիթից օգուտ քաղել և որքան հնարաւոր է ցոյց տալ նրանց և վայրի տեսակների կամ ցեղակիցների կազմւածքի ու մտաւոր կարողութեանց մէջ առաջացած տարբերութիւնները կեանքի այլ պայմանների շնորհիւ։ Բոյսերի զարգացումը դիտել-քննելու առիթներ ներկայացնելու համար պէտք է այն դպրոցներում, ուր որ մի մարգի տեղ անգամ չունին, ծաղկամանների մէջ բոյսեր խնամել։ Պէտք է, որքան հնարաւոր է, հանքաբանութեան, բուսաբանութեան և կենդանաբանութեան համար էքսկուրսիաներ կատարել։ Աշխատագիտութեան բոլոր մասերը՝ քիմիա, հանքաբանութիւն, Ֆիզիքա և արհեստագիտութիւն, պէտք է միասին աւանդել, այսինքն՝ երբ այս կամ այն առաջարկած առարկան դասի նիւթ է լինում, պէտք է ամեն կողմով բնական կապակցութեամբ այդ վերցրածը մշակել։ Այս ասածից պարզ է, որ բնական գիտութիւններին յատկացւած ժամերը չըպէտք է դասացուցակում առանձին առանձին մասնաճիւղերի անուններ կրեն, այլ պէտք է բոլորի համար անխտիր գործադրւեն՝ նայելով պահանջին։ Բնական գիտութիւնները իրանց իսկական իմաստով աւանդելու համար պէտք է ամեն մի դպրոց հետզհետէ ձեռք բերէ, բացի ծրագրած իրերից, գործիքներից և այլն, նաև աւանդելի նիւթերի

*աղբիւրները և մեթոդիկային վերաբերեալ ձեռնարկներ։ Այս նպատակին ծառայող ռուսերէն ձեռնարկներ էլ կան, գնահատելի ինքնուրոյն կամ թարգմանական աշխատութիւններ։ Աւելորդ չէ այստեղ յիշել իբրև օրինակ հետևեալ գրքերը։*

*1. Գոլբերի* «Міръ Божій», *թարգմ. Չիժովի, 4 պատկերազարդ հատորիկներ, գինը 1 ռ. 25 կոպ..*

*Այս գրքոյկներից կարելի է սովորել, թէ ինչպէս հնարաւոր է առանց ֆիզիքական կաբինետի և քիմիական լաբարատորիայի տարրական միջոցներով բաւականին բան սովորեցնել։ Բնական գիտութիւնների բոլոր ճիւղերը այս եղանակով մշակւած են այդ գրքոյկներում։*

*2. Պաւլովի* Методика природовѣдѣнія, СПБ. 1902. *գրքում վերև բացատրւած թէօրիան և նրա գործադրութիւնը օրինակներով և օրինակելի դասերով լաւ բացատրում է։ Այս գրքում այլ նմանօրինակ ձեռնարկներ էլ են յիշւում։*

*3. Բէրնարդ Լանդբէրգի* Въ царствѣ лѣсовъ и полей *գրւածքը ծառայում է նոյն նպատակին։*

*4. Ե. Յ. Ռայնբոտի* Отвѣты на вопросы изъ области техническихъ производствъ *գիրքը պարունակում է իր մէջ ծրագրի առաջարկած արհեստագիտական նիւթերը աննշան բացառութեամբ մանրամասն մշակւած։*

*Բնական գիտութիւնների ծրագրի նիւթերը վերև բացատրւած սկզբունքների համեմատ համադրւած են առանձին թերթում (տես գրքի վերջը)։ Քառամեայ դասընթացքով դպրոցների համար առանձին դասընթացք կազմւած չէ. առաջարկւում է վեցամեայ դպրոցի Գ. և Դ. դասարանների ծրագիրը։ Կենդանաբանութեան, բուսաբանութեան ու հանքաբանութեան նիւթերն այս երկու դասարան-*

ներում ամփոփ բնաւորութիւն ունին, իսկ ֆիզիքայինն ու քիմիայինը՝ ոչ, ուստի պէտք է Ե. և Զ. դասարանների այս գիտելիքների ծրագրներից քաղել համառօտ նիւթեր՝ բոլոր ճիւղերն ամփոփ աւանդելու համար։ Հետևաբար հարկաւոր կը լինի Գ. և Դ. դասարանների բնապատմական նիւթերն էլ աւելի համառօտ աւանդել՝ քան վեցամեայ դասընթացքով դպրոցներում։

---

## VII. ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԻՒՆ

### ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Դպրոցական կեանքի հէնց առաջին օրերից պէտք է առիթներից օգուտ քաղել և աշակերտներին հասկացնել մարմնի, հագուստեղէնի, բնակարանի, օդի, ջրի և առհասարակ սննդեղէնի մաքրութեան անհրաժեշտութիւնը և անմաքրութիւնից առաջացած չարիքները։ Այս ցուցմունքներն աւելի նշանակութիւն կունենան նրանց համար, երբ որ երրորդ ու չորրորդ տարին ուսած կլինեն մարդակազմութեան ու բնախօսութեան տարերքը բնագիտութեան հետ։ Մանաւանդ այս առարկաների դասատուները պէտք է պատեհ առիթներից օգուտ քաղեն և առաջնորդեն աշակերտներին առողջապահական խնդիրներ լուծելու մէջ։ Առողջապահութեան իսկական դասընթացքը տարրական դպրոցներում վերապահւում է վերջին վեցերորդ դասարանին, երբ օժանդակ գիտելիքները համարեա թէ աւարտած լինելով՝ աշակերտներին հնարաւոր կլինի առողջապահութեան պահանջները գիտակցօրէն ըմբռնել։ Ինչ վերաբերում է առտնին հիւանդապահութեանը, ժամանակի սղութեան պատճառով այդ մնում է հետևեալ աւելի բարձր դասընթացքին։ Բայց որպէսզի նաև

վերջամեայ դասընթացքն աւարտողները բոլորովին զուրկ չմնան այս կարևոր գործնական գիտելիքից. նրանց պահանջներին կարելի էր գէթ մասամբ բաւարարութիւն տալ ազատ ընթերցանութեամբ, քանի որ ուսած օժանդակ գիտելիքները առողջապահութեան հետ կարող էին դիւրացնել այսպիսի բովանդակութեամբ ժողովրդական գրքերից օգուտ քաղելը։ Այնուամենայնիւ կարելի է Զ. դասարանում մի քանի կարեւորագոյն ցուցմունքներ անել դժբաղդ դէպքերում առաջին օգնութիւնը հասցնելու համար։

# Ծ Ր Ա Գ Ի Ր

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

### Ա. Ընդհանուր գիտելիքներ

ա. Օդը։ Մաքուր և անմաքուր օդը, անմաքրութեան տեսանելի և անտեսանելի տարրերը։

I. Տեսանելի վնասակար տարրերը։ Ծուխը (թոնրից, օջախից, մանղալից)։ Փոշին՝ հանքային—անօրգանական և օրգանական՝ բուսական ու կենդանական նիւթից առաջացած, սրանց տարբերութիւնները։ Դրսից մտած փոշին, գետինը առանց ջրջկնելու աւելելուց առաջացած փոշին, փոշոտ հագուստեղէնը բնակարանում թափ տալուց, ցեխոտ կօշիկներից առաջացած փոշին։

II. Անտեսանելի վնասակար տարրերը։ Ածխածնի չափազանց մեծ քանակը երկաթէ վառարանից, ինքնաեռից, օրգանական նիւթերի փթելուց, մեծ քանակութեամբ մարդկանց ու կենդանիների արտաշնչումից փակ տեղերում։ Ածխածնոտ օդի վնասները, նրանով ածխակալածներին (ածխահարներին), այսինքն՝ թունաւորուածներին օգնելը։

Միկրոբներ։ Վարակիչ միկրոբներից առաջացած հիւանդութիւնները, վարակւածներին առանձնացնելու և կացարանը ախտահանելու անհրաժեշտութիւնը, վէրքերի պահպանութիւնը միկրոբներից։

Խոնաւութիւնը—խոնաւ բնակարանից (գետնափորանից և այլ պատճառներից), լւացքը սենեակում կախելուց։ Խոնաւութեան վնասները։

բ. Ջուրը։ Մաքուր և անմաքուր ջուրը. ջուրն իբրև սննդառութեան և մաքրութեան միջոց. Ջրի տեսակները՝ գետի, աղբիւրի, ջրհորի, լճի, ծովի. սրանց համեմատութիւնը. Ինչ տեսակ ջուր ենք գործածում և ինչպէս պէտք է գործ ածինք։ Ջրհորների և գետերի ջրերի գործածութեան վտանգը համաճարակի ժամանակ (խօլերա, տիֆ)։ Համաճարակների ժամանակ եփ տւած ջուր գործ ածելը։ Եփ տւած ջուրն ինչպէս պահել։ Ջրանցքներ ու կոյուղիները։

Մաքրութիւն։ Մարմնի մաքրութեան անհրաժեշտութիւնն ընդհանրապէս և մասնաւորապէս ականջների, բերանի և ատամների, ձեռների և երեսի (լւացւելու կարևորութիւնը հացի նստելուց առաջ)։ Կեղտից առաջացած վտանգը. սառ ու տաք ջրով լողանալը. վաննա, հասարակական բաղանիքների կարևորութիւնը։ Սպիտակեղէնի մաքրութիւնը (բացատրել շապիկ չըփոխելու նախապաշարմունքի վնասակար հետևանքը). ուրիշի շորերը անլւայ հագնելու վնասը։ Եռման ջուրն իբրև ախտահանման միջոց։ Սապոնի մաքրիչ ազդեցութիւնը. լւացքն ինչպէս անել ու չորացնել։

գ. Ջերմութիւնն ու սառնութիւնը։

Ջերմութիւնը։ Սենեակի ջերմութեան չափը և մարմնի ջերմութիւնը, որ արիւնիցն է։ Սենեակի և մարմնի ջերմաչափ։ Ջերմը հիւանդութեան նշան է։

Հիւանդին պառկեցնելու, ուտեցնելու և խմեցնելու եղանակները։ Զափազանց տաք հագնելու վնասները։ Երեխաներին չպէտք է շատ տաք հագցնել։

Ցուրտը։ Ցուրտը մեր մարմնի զգայողութեան տեսակէտից համեմատական գաղափար է։ Ի՞նչ է մրսիլը։ Քրտնածը, քրտնածին պահելը։ Մրսելուց առաջացած հիւանդութիւնները։ Մարմնամասերի սառչիլը և խնամքը։ Օղին սառեցնում է և ոչ թէ տաքացնում։

դ. Լոյսը։

Արևի ճառագայթների օգտակարութիւնը. անմիջական և անդրադարձ լոյս։ Ո՞ր կողմի լուսամուտները համապատասխան են առողջապահական պահանջներին։ Աշակերտների դիրքը դէպի լոյսի ուղղութիւնը պարապելու ժամանակ։ Աչքը իբրև տեսողութեան գործարան և նրա առողջապահութիւնը։ Տես զգայարանքներին վերաբերեալ հատուածը։

ե. Բնակարանի և դասարանի առողջապահական պայմանները։ Շէնքը, լուսաւորութիւնը, օդափոխութեան եղանակները։ Ջոր ու խոնաւ բնակարան։ Ննջարանի առողջապահական պայմանները։ Գետնին պառկելու վտանգը (խոնաւութիւն, միջատներ)։ Կարասիքի և այլ իրեղէնների մաքրութիւնը։ Տունն աւլելու և պատերն ու առաստաղը սրբելու եղանակները։ Հացատունը, թոնիրը, խոհանոցը, երդիկը և նրա նշանակութիւնը։

Հիւանդի սենեակը, անկողինը։ Մի անկողնում երկուսով քնելու վնասը։ Երեխայի օրօրոցը. պինդ բարուրելու վտանգը։ Օրօրելու վնասը։ Մանկական մահճակալը։ Լուն, ոջիլը, բաղինջը, սրանից ազատուելու միջոցը։

Բակը, պարտէզը, նրանց օգտակարութիւնը։

զ. Հագնելիքի առողջապահական պայմանները։ Հա-

գուստեղէնի նիւթերը (բամբակ, բուրդ, վուշ, մետաքս) ըստ տարուան եղանակների. այդ նիւթերի ջերմապահութեան զանազան աստիճանները. Փուփայ-կայի յատկութիւնները, նրա օգուտն ու վնասը. գուլպայ, տնդամաճ, կրկնակօշիկ։ Երեխայի բարուրն ու հագուստեղէնը, ոտների ու գլխի հագնելիքները։ Տես նաև ջրին վերաբերեալ հատուածը։

է. Ուտելիք և խմելիք։ Ուտելիքի նիւթերը բնական (քիմիական) տեսակէտով—կենդանական, բուսական և հանքային աշխարհներից։ Նրանց քիմիական գլխաւոր առնչութիւնները—ջուր, սպիտ (бѣлокъ) ածխածին (углеродъ)։ Գլխաւոր սննդարար նիւթը՝ սպիտը։ Նիւթերի մարսողականութիւնը և սննդարար ոյժը։ Մսեղէն, բուսեղէն և խառն կերակուրներ։ Կաթը, մօր կաթը և միւս կենդանիներինը մանկան համար։ Կաթի եփ տալու անհրաժեշտութիւնը և պահելու կերպը։ Կաթից պատրաստուած ուտելիքները՝ պանիր, մածուն, իւղ, թան և ամեն մէկի սննդարար զօրութիւնը։ Ձուն ու միսը, նրանց տեսակային բաժանմունքը, պահելու և գործ ածելու կերպերը, մսաջուր (բուլիօն) պատրաստելը։ Կերակուր պատրաստելը։ Բանջարները և նրանց սննդարար զօրութիւնը. բանջարեղէնի պատրաստելը։ Աշխատանք և սնունդ։ Ուտելու ժամերը, չափը։ Աշակերտի աշխատանքը, սնունդը, հանգիստը։ Փորկապութիւն և փորլուծութիւն (հասակաւորների և մանուկների)։ Խմելիքը։ Սպիրտից առաջացած վնասները (արբեցողութիւն)։

## Բ. Մասնաւորապէս կարեւորագոյն օրգանների առողջապահութիւնը

ա. Նիւթափոխութեան, այսինքն՝ սննդառութեան և շնչառութեան գործարանների առողջապահութիւնը.

վերոյիշեալ այս կամ այն գործօնների ազդեցութիւնն այս օրգանների վրայ, ինչպէս նաև մաշկի առողջապահութիւնը նիւթափոխութեան տեսակէտից։

բ. Ուղեղի և ընդհանրապէս ջղային ու մկանային սիստէմների առողջապահութիւնը։ Աշխատութիւն, ուժասպառութիւն, հանգիստ, մարմնամարզութիւն և քուն։

գ. Զգայարանքների առողջապահութիւնը։ Վերոյիշեալ այս կամ այն գործօնների ազդեցութիւնը նրանց վրա։

---

## VIII. ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒ

### ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Լեզուի միջոցով մենք արտայայտում ենք մեր ամբողջ մտաւոր աշխարհը. լեզուն է նաև մեր հոգեկան աշխարհի զարգացման կարևորագոյն պահանջը։ Առանց լեզուի՝ մեր գիտակցութեան մէջ եղած մտապատկերները ներկայացնում են մի խառն զանգուած և մենք չենք կարող դրանց նպատակայարմար կերպով գործածել և կարևոր գաղափարները կազմել. առանց լեզուի մարդս չի կարող խոհական լինել։

Այսպիսով լեզուի և հոգեկան զարգացման ներքին փոխադարձ ներգործութիւնն անկասկած լինելով պարզ է, որ լեզուի ուսուցումը դպրոցական ուսման ամենաէական տարրերից մէկն է։

Երեխայի հոգեկան զարգացման և լեզուի միջև եղած այս կապակցութիւնից արդէն ակնյայտնի է, որ դպրոցական ուսուցումը բնականաբար պէտք է տեղի ունենայ մայրենի լեզուով։

Մայրենի լեզուի ուսուցումը առաջնակարգ տեղ

պէտք է բունէ մեր տարրական դպրոցներում, որոնց շրջանաւարտները պէտք է կարողանան գրական աշխարհաբարով ա. իրենց մտքերը բերանացի և գրաւոր արտայայտել՝ ճիշտ, պարզ ու վարժ. բ. ուրիշների արտայայտած և իրենց զարգացման համապատասխան բերանացի և գրաւոր մտքերը ըմբռնել որոշ և արագ. գ. մտաւոր, բարոյական և գեղագիտական (էսթետիկական) զարգացում ձեռք բերել՝ հայկական և օտարազգի ընտիր երկասիրութիւնների միջոցով. դ. ծանօթութիւն ունենալ տաճկահայոց բարբառի և գրաբար լեզւի։

Բերանացի և գրաւոր արտայայտութեան մէջ պէտք է տիրապետէ գրականական աշխարհիկ լեզւի քերականութիւնը։ Լեզւի ուսուցման գլխաւոր տարրերն են՝ ա. ընթերցանութիւնը, բ. քերականութիւնը և գ. գրաւոր աշխատանքները։

## Ա. Ընթերցանութիւն

Հայոց լեզւի ընթերցանութեան նիւթը տալիս է հայոց լեզւի դասագիրքը։ Լեզւի յաջող դասաւանդութեան համար անհրաժեշտ է խնամքով և որոշ սկզբունքներով կազմւած դասագիրք ունենալ։ Դասագիրքը պէտք է բազմակողմանի բովանդակութիւն ունենայ և ներշնչէ բարոյական և գեղասիրական զգացմունքներ, սակայն հեռու պիտի լինի ձևական-բարոյական խրատներից։

Մանկական հոգու զարգացման բոլոր աստիճաններին բանաստեղծական արտայայտութիւնները մի առանձին խորը տպաւորութիւն են գործում աշակերտի սրտի վրայ. ուստի լեզւի դասագիրքն էլ պէտք է պարունակէ հատակին մատչելի և ընտիր բանաստեղծական գրւածքներ։ Բայց բացի զուտ բանաստեղծա-

*կան հատուածներից՝ դասագիրքը պիտի տեղ տայ նաև գեղարուեստօրէն արտայայտուած ռէալ նիւթերի։*

*Դասագրքի յօդուածները պէտք է համապատասխանեն աշակերտների զարգացման և գիտութեան չափին, պէտք է նրանց հետաքրքրութիւնը շարժեն։ Պէտք է խոյս տալ շատ երկար, խճողուած, մութը և երկար բացատրութիւնների կարօտ նախադասութիւններից։ Որչափ որ պարզ կանոնաւոր և գրական լինի դասագրքի լեզուն, այնչափ լաւ։ Յօդուածները պէտք է մաքուր գրական լեզուով գրուած լինին։ Զ. դասարանի դասագրքի մէջ պէտք է բաւականաչափ զետեղուած լինին նիւթեր տաճկահայ բարբառով։*

## Բ. Քերականութիւն.

*Մեր դպրոցներում մինչև այժմ իշխող է հանդիսացել դասաւանդութեան այն հին սիստէմը, որով լեզուի դասը երեք կարգի էին բաժանում. ա. կարդալ-պատմելու. դաս, բ. քերականութեան դաս, և գ. գրաւոր աշխատանք։ Երեք մասերն էլ աւանդել են իբրև միմեանցից անկախ, առանձին առարկաներ։ Դասատուութեան այդ եղանակը անօգուտ և աննպատակայարմար է. ընդհակառակը, լեզուի դասաւանդութիւնը պէտք է սերտ կերպով միացած մի ամբողջութիւն կազմի։*

*Քերականութիւնը մեր տարրական դպրոցներում չպէտք է դասաւանդել իբրև համակարգութիւն-սիստէմ, այլ միայն գործնական կերպով։ Քերականութիւնից պէտք է անցնել միայն այն, ինչ որ բաւականութիւն կտայ լեզուի որև է պահանջին։ Աշակերտների քերականական թերութիւնները երևան են գալիս՝ թէ նրանց խօսելու և թէ գրելու միջոցին. թէ պատմելու և թէ շարադրութիւն գրելու ժամանակ պարզ նկատւում են այդ թերութիւնները։ Պատմելու ժամա-*

նակ աւելի շուտ և աւելի պարզ կերպով են երևում սխալները, որովհետև աշակերտը երկար ժամանակ չունի մտածելու և կամ գրքերում որոնելու այս կամ այն կանոնը, ինչպէս որ կարող է անել տանու շարադրութիւնը գրելիս։ Միւս կողմից էլ կէտադրութեան սխալներն որոշ ու ակնյայտնի են լինում աւելի գրաւոր շարադրութիւնների մէջ, քան պատմելու ժամանակ։

Շատ անգամ աշակերտները պատմելիս կամ գրելիս այնպիսի սխալներ են անում, որոնք կապւած են ոչ թէ միայն իրենց անհատականութեան, այլ և տեղական պայմանների հետ. կան, օրինակ՝ արտասանութեան սխալներ և ամբողջովին սխալ գործածւած բառեր, որ յատուկ լինելով տեղական գաւառաբարբառին, հեշտ չէ դրանց շուտով արմատախիլ անելը։ Թէև լեզւաբանական տեսակէտից դրանք հետաքրքրական են, բայց և այնպէս ուսուցիչը պէտք է այդ սխալներն ուղղէ գործնական կերպով, առանց քերականական կանոնների։

Քերականութիւնը լեզւի դասատուութեան համար նպատակ չպէտք է լինի, այլ միայն միջոց. աշակերտները ոչ թէ քերականութիւն պէտք է սովորեն, այլ ուղիղ խօսել ու գրել, և ինչ որ հարկաւոր է ուղիղ խօսելու և գրելու համար, միայն այն պէտք է սովորեցնել և միայն այն ժամանակ, երբ պահանջ է զգացւում։ Այսպիսով քերականութեան դասը իբրև ինքնուրոյն առարկայ՝ պէտք է բոլորովին վերացնել և միացնել ընթերցանութեան ու շարադրութեան հետ։

## Գ. Գրաւոր աշխատանքներ.

Գրաւոր աշխատանքի զանազան տեսակները նոյնպէս լեզւի առանձնացած մասը չպէտք է համա-

րել, այլ սերտ կերպով կապել լեզւի և նոյնպէս այլ առարկաների ուսուցման հետ։ Շարադրութեան բովանդակութիւնն ու արտաքին ձևը մի ամբողջութիւն պէտք է կազմեն. Նիւթը պէտք է վերցնել ուսած առարկաներից, ընթերցանութեան յօդուածներից, երեխաների առօրեայ և սովորական կեանքից։ Ինչ վերաբերում է ձևին, հարկաւ, աշակերտները, որքան կարելի է, պէտք է անսխալ և գրական լեզւով գրեն, բայց ազատ, իրենց մտածած նախադասութիւններով և բառերով։ Ըստ ձևի շարադրութիւնը կարող է լինել՝ ա. իրերի, պատկերների նկարագրութեան ձևով, բ. սովորած պատմութեան, զրոյցի կամ պատահած որ և է դէպքի նկարագրութեան ձևով, գ. խօսակցական և դ. նամակի ձևով: Նպատակայարմար է աշակերտներին վարժեցնել նաև կեանքի մէջ անհրաժեշտ և սովորական գրութեան ձևերին, օրինակ հասցէի, պայմանագրի և այլն։

Ուղղագրութիւն սովորեցնելու նպատակով պէտք է արտագրութեան վարժութիւններ անել տալ՝ թէ տպագրից և թէ ձեռագրից. արտագրելիս երեխաները պէտք է բարձր ձայնով արտասանեն և ամբողջ բառեր արտագրեն և ոչ թէ մաս-մաս։ Վերջին հետազօտութիւնները աւելի մեծ նշանակութիւն են տալիս արտագրելու վարժութիւններին, քան սովորաբար ընդունուած էր։

Ուղղագրական թելադրութիւնները պէտք է նախապատրաստուած լինեն. իւրաքանչիւր թելադրութիւն պէտք է մի որոշ մասնաւոր նպատակ ունենայ։

*Կարդալ-գրելն առաջին տարւայ սկզբում անմիջապէս չպէտք է սկսել, այլ առ նուազն մի ամսից յետոյ. այդ միջոցում աշակերտներին պէտք է զբաղեցնել հնչական վերլուծման և գրերի տարրերը գծելու վարժութիւններով։ Կարդալ-գրելու վարժութիւնների նիւթը պէտք է վերցնել աշակերտների առօրեայ կեանքից, իրազննութեան դասերից, սովորած փոքրիկ պատմութիւններից և հէքիաթներից։ Իսկական կարդալ-գրելն սկսւում է «օրինակելի բառ»-երով, որոնց մասին երկար բացատրութիւններ չպէտք է տալ, քանի որ վերցրած են լինում նախապէս մշակւած նիւթից։ Բառը բաժանւում է իւր բաղկացուցիչ տարրերի—վանկերի, հնչիւնների—և կրկին միացնւում բերանացի. այնուհետև ցոյց է տրւում բառը իւր պատկերով առանձին, որով բառը աւելի լաւ է տպաւորւում երեխայի գիտակցութեան մէջ։ — Աւելի նպատակայարմար է նախ ձեռագրով սկսել։—Շարժական տառերը լինում են թէ ձեռագիր և թէ տպագիր։ Երեխաները տառերը գրում են օրինակելով, թելադրութեամբ և ինքնուրոյն կերպով։ Երեխաները պէտք է կարդան նաև խմբովին։*

*Տաճկահայոց գրական բարբառը պէտք է սովորեցնել գործնական եղանակով վեցերորդ դասարանում, համեմատելով արևելեան աշխարհաբարի հետ։*

## Ծ Ր Ա Գ Ի Ր

### Ա. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաթական 6 դաս*).

#### 1. Կարդալ-պատմել

*Հնչական եղանակով և «օրինակելի բառ»-երի օժանդակութեամբ աշակերտները պէտք է սովորեն ամբողջ այբուբենի տառերը կարդալ և գրել. պէտք է*

անցնեն գլխատառերը և վարժ կերպով կարդան բառերն ու նախադասությունները, վերջը նաև փոքր յօդուածները։ Անգիր անել կարճ ոտանաւորներ։ Աշակերտները պէտք է կարողանան սովորած յօդուածը հարցերով և երբեմն նաև առանց հարցերի պատմել։

## 2. Քերականութիւն

Կէտադրութեան և առոգանութեան նշանները։

1. Ձայնաւոր և բաղաձայն տառեր։

2. Երկբարբառներ, վանկերի բաժանումը։

## 3. Գրաւոր

Հասարակ և գլխագիր տառերը կանոնաւոր գրել. արտագրել առանձին բառերն ու կարճ նախադասութիւնները։ Թելադրութեամբ գրել սովորած բառերն ու պարզ նախադասութիւնները։

# Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 6 դաս).

## 1. Կարդալ-պատմել

Կարդալ դասագրքի փոքր հատուածները առանց նախավարժութիւնների, շշտապելով և լաւ արտասանութեամբ. կարդացած յօդուածի բովանդակութիւնը պատմել։ Դիւրըմբռնելի բանաստեղծութիւնները բերան անել։

## 2. Քերականութիւն

Նախադասութիւնների վերլուծումը՝ հարցերով, առանց տերմինների։

## 3. Գրաւոր

Ճիշտ արտագրութիւն, թելադրութիւն. գրել անգիր արածը։ Գրաւոր պատասխաններ ուսուցչի առանձին հարցերին։

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս).

### 1. Կարդալ-պատմել

*Պէտք է ուշադրութիւն դարձնել, որ յօդուածները կարդալիս աշակերտները կարողանան սահուն և մտքի համեմատ շեշտադրութեամբ կարդալ։ Նրանք պէտք է կարողանան ճիշտ նախադասութիւններով և ազատ արտայայտել իրենց մտքերը, ճշտութեամբ պէտք է պատմեն սովորած յօդուածների բովանդակութիւնը։ Պէտք է կարճ, մատչելի ոտանաւորներն իւրացնեն, բերան անեն և պատմեն պարունակութիւնն՝ ուսուցչի տուած հարցերի օգնութեամբ։*

### 2. Քերականութիւն

*Ամբողջ այբուբենի տառերի անունները. տառերի թւական նշանակութիւնը մինչև Ժ (10)։*

*Տողադարձի պարզ կանոնները. եզակի և յոգնակի. յոգնակիի կազմելը, պարզ և բարդ բառեր. Նախադաս և յետադաս մասնիկների մասին հասկացողութիւն։*

*Առարկայ. գոյականի փոփոխութիւնը հարցերով. յատուկ և հասարակ անուններ. յօդի մասին հասկացողութիւն։*

*Գործողութիւն. ներկայ, անցեալ և ապառնի։ Որպիսութիւն. ածականը գոյականի հետ և առանց գոյականի։*

*Պարզ նախադասութիւնների վերլուծումը՝ տերմիններով։*

### 3. Գրաւոր

*Արտագրութիւն, թելադրութիւն, սովորած յօդուածների ամփոփ փոխադրութիւն։ Գրել ինքնուրոյն կազմած նախադասութիւններ։*

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս).

### 1. Կարդալ-պատմել

Աշակերտները պէտք է կարողանան ճիշտ առոգանութեամբ և սահուն կարդալ աւելի բարդ յօդուածներն ու իւրացնեն պարունակութիւնը։ Պէտք է կարողանան նոյնպէս չափական բանաստեղծական գրուածքների բովանդակութիւնը պատմել։

### 2. Քերականութիւն

Համանիշ բառերի նշանակութիւնը և ուղղագրութիւնը։ Կէտադրութիւն համաձայն նախադասութեան։ Գոյականների կանոնաւոր հոլովումն, բայերի կանոնաւոր խոնարհումները։ Տարբերել նաև խօսքի հետեւեալ մասերը՝ դերանուն, թւական անուն, նախադրութիւն, ձայնարկութիւն, մակբայ, շաղկապ։ Ընդարձակ և միաւորեալ նախադասութիւններ։

### 3. Գրաւոր

Աւելի ընդարձակ թելադրութիւն և փոխադրութիւն. շարադրութիւն՝ թէ անցած յօդուածներից և թէ աշակերտների առօրեայ կեանքից վերցրած՝ դասարանում մշակուած ծրագրով։

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս).

### 1. Կարդալ-պատմել

Ընդարձակ յօդուածներ կարդալ, իւրացնել և բովանդակութիւնն ազատ պատմել. յօդուածը բաժանել իւր բաղկացուցիչ մասերի։ Յօդուածը համառօտել՝ տարբերելով էականը երկրորդականից։ Անգիր արած ոտանաւորի բովանդակութիւնը ազատ և արձակ պատմել։

### 2. Քերականութիւն

*Անկանոն հոլովումներ. անկանոն խոնարհումներ. դերանունների հոլովումները։*

*Տարբերել գլխաւոր նախադասութիւնը երկրորդականից։ Երկրորդական նախադասութիւնների տեսակները։*

### 3. Գրաւոր

*Թելադրութիւն, փոխադրութիւն և շարադրութիւն աշակերտներին մատչելի նիւթերի մասին, ուսուցչի տուած որոշ ցուցմունքների համաձայն։*

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաթական 4 դաս*).

### 1. Կարդալ-պատմել

*Բացատրել և պատմել ընդարձակ և դժուար յօդուածներ։ Կարդալ և հասկանալ արևմտեան բարբառով գրուած պարզ հատուածներ և բովանդակութիւնը պատմել մեր գրական լեզուով։ Բերան անել արևելեան և արևմտեան բարբառներով գրուած ոտանաւորներ։*

### 2. Քերականութիւն

*Բառակազմութեան գիտակցական ըմբռնումը. բայանուն, բայածական, դերբայ։*

*Բարդ նախադասութիւններ. Երկրորդական նախադասութիւնների կրճատումը։*

*Արևմտեան աշխարհաբարի քերականական ձևերը ըմբռնել արևելեան աշխարհաբարի համեմատութեամբ և օգնութեամբ։*

*Անցած ամբողջ քերականական նիւթի սիստեմատիք դասաւորութիւնը։*

### 3. Գրաւոր

*Ինքնուրոյն շարադրութիւններ ուսուցչի տուած թեմաների մասին՝ աշակերտների սովորած առարկաներից և շրջապատող կեանքի երևոյթներից։*

---

## IX. *ՌՈՒՍԱՑ ԼԵԶՈՒ*

### *ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ*

*1. Ռուսաց լեզուի դասաւանդութիւնը տարրական դպրոցներում սկսւում է երրորդ տարուանից այն պատճառով, որ ա) հակամանկավարժական է միաժամանակ սկսել երկու լեզուների դասաւանդութիւնը և յիշողութեան զուր ու անօգուտ ծանրաբեռնութիւն է՝ ծանօթացնել երեխաներին օտար լեզուի բառերի և ձևերի հետ առաջ, քան նրանք մի յայտնի վարժութիւն են ձեռք բերել մայրենի լեզուի ընթերցանութեան և գրութեան մէջ և բ) որ, երբ երեխաները մայրենի լեզուով իւրացրած են լինում անհրաժեշտ սկզբնական տարրական լեզուական գաղափարները, այնուհետև կարելի է աւելի հեշտ, արագ և գիտակցօրէն անցնել օտար լեզուի դասընթացքը։*

*2. Վեցդասեան դպրոցը աւարտելիս՝ աշակերտը պիտի կարողանայ վարժ կարդալ հեշտ լեզուով գրուած ռուսերէն յօդուածներ և պատմել նրանց բովանդակութիւնը պարզ նախադասութիւններով և առհասարակ արտայայտել իր մտքերը բաւականին կանոնաւոր ռուսերէնով, առանց խոշոր սխալների։ Այդպիսի արդիւնքի կարելի է հասնել 4 տարուայ ընթացքում միայն այն դէպքում, եթէ ուսուցիչը խստութեամբ հետևի հետևեալ սկզբունքներին։*

*ա). Ուսուցիչը պէտք է աշակերտների հետ խօսի*

միմիայն ռուսերէն, հէնց առաջին դասից, աշխատելով շարունակ գործ ածել աշակերտներին յայտնի բառերը և նոր բառեր բացատրելիս դիմել ծանօթ բառերին, բացատրութեանը իրերով, պատկերներով և այլ զննական միջոցներին և միայն ծայրայեղ դէպքում թարգմանութեանը։ Առանձին անհասկանալի բառեր և նախադասութիւններ թարգմանել միմիայն այն ժամանակ, երբ ռուսերէն կամ զննական միջոցներով բացատրելը դժւար է կամ շատ ժամանակ պիտի խլէ։ Ամբողջ յօդւածներ թարգմանելու կարիք չի զգացւի, եթէ նախօրօք բացատրւած են յօդւածի բառերն ու դարձւածքները. եթէ ուսուցիչը ստիպւած է յօդւածը թարգմանել և այնպէս հասկանալի դարձնել իր աշակերտներին, այդ ցոյց է տալիս, կամ որ առաջուց տեղի չեն ունեցել անհրաժեշտ բացատրութիւնները, կամ որ յօդւածը անաջող է ընտրւած և վեր է այդ հասակի աշակերտների հասկացողութիւնից։ Առհասարակ պէտք է խուսափել յօդւածներ թարգմանելուց։ Թարգմանութիւնը թէև սկզբում ըստ երևոյթին հեշտացնում է ուսուցչի գործը, բայց իսկապէս միայն վնաս է բերում դասաւանդութեան աջողութեանը, քանի որ աշակերտները՝ լաւ գիտենալով որ յօդւածը թարգմանւելու է, հարկաւոր ուշադրութեամբ չեն լսում բառերի և դարձւածքների բացատրութիւնները, և կենդանի գրուցատրական մեթօդը տեղի է տալիս մեռեալ թարգմանականին։ Օտար լեզւով վատ է խօսում նա, ով որ մտքում շարունակ թարգմանում է մայրենի լեզւից։

բ). Չպէտք է ամեն դասի չափազանց շատ նոր բառեր և դարձւածքներ տալ աշակերտներին, այլ սիստեմատիքաբար առաջ գնալով՝ աշխատել ամեն անգամ բազմակողմանի օգտւել արդէն սովորած բառամթերքից։ Այդ պատճառով դասագրքի յօդւածները պէտք է

այնպէս դասաւորել, որ աշակերտը կարողանայ մի քանի բառերի և դարձւածքների բացատրութիւնից յետոյ ինքը հասկանալ ամբողջ յօդւածը։

գ)․ Աշակերտների հետ խօսելու և յօդւածների բովանդակութիւնը պատմել տալու ժամանակ պէտք է անպայման պահանջել լիակատար պատասխաններ։

3․ Ամբողջ դասընթացքի ժամանակ գործնականը պէտք է առաջին տեղը բռնէ քերականութեան հետ համեմատած։ Դպրոց մտնելիս երեխաները արդէն խօսում են հայերէն և դպրոցը միմիայն կարգի է բերում նրանց լեզւական հարստութիւնը։ Իսկ ռուսերէն խօսել պիտի նրանք վարժւեն հէնց դպրոցում․ ուստի քերականութեան դասաւանդութեան նպատակն է այստեղ գլխաւորապէս կանոնաւոր խօսակցութեան ու գրութեան նպաստելը։

Գործնական վարժութիւնների նիւթը դասաւորելիս պէտք է աչքի առաջ ունենալ, որ 1) բառամթերքը հետզհետէ, ստիճանաբար հարստացւի, որ 2) յօդւածների դարձւածքները շրջելիս՝ միշտ կրկնւեն հին բառերն ու նախադասութիւնները և աշակերտները ծանօթանան հոմանիշ բառերի հետ ու կարողանան նրանց ճիշտ իմաստով համապատասխան տեղերում գործածել և որ 3) վերջապէս՝ ամեն բառ վերցնւի ոչ թէ առանձին, այլ նախադասութեան մէջ, այնպէս որ իւրացնւի նաև բառի կենդանի կապը ուրիշ բառերի հետ խօսակցութեան մէջ։

Ռուսաց լեզւի ձևերի կանոնաւոր գործածութիւնը դժւարանում է գլխաւորապէս այն պատճառով, որ այդ լեզուն մի շարք առանձնայատկութիւններով շատ է տարբերւում մեր մայրենի լեզւից։ Անհրաժեշտ է, որ ուսուցիչը հէնց առաջին դասից լուրջ ուշադրութիւն դարձնի այդ առանձնայատկութիւնների վրայ և

բաւականաչափ գործնական վարժութիւններով լաւ սեփականացնել տալ աշակերտներին աւելի առաջ, քան թէ ծրագրի մէջ նշանակուած են նրանք, որպէս քերականական վարժութիւնների նիւթ։ Այդպիսի առանձնայատկութիւններից աչքի են ընկնում՝

ա). շեշտադրութիւնը և կոշտ ու փափուկ հընչիւնների արտասանութիւնը (մանաւանդ ы և л),

բ). գոյականների սեռը,

գ). ածականների և գոյականների համաձայնութիւնը,

դ). գոյականների և բայերի (ստորոգեալների) սեռի համաձայնութիւնը,

ե). նախդիրների և նախադաս մասնիկների գործածութիւնը մտքի փոփոխութեան համեմատ,

զ). բայերի տեսակների (կատարեալ և անկատար) գործածութիւնը, մանաւանդ ապառնիի կազմութեան ժամանակ,

է). յաճախ գործածական բայերի խնդրառութիւնը (употребленіе падежей) այն դէպքերում, երբ տարբերւում է հայերէնից։

*Ծանօթութիւն.* ցանկալի է, որ երեխաները որքան կարելի է շուտ սովորեն հայերէնի մէջ տարբերել տրականը հայցականից, որովհետև այդ հոլովների շփոթելը հայերէնի մէջ մեծ խոչընդոտ է հանդիսանում ռուսերէն կանոնաւոր խօսելու համար։

4. Որպէսզի ռուսերէն դասատուութիւնը, մանաւանդ նրա քերականական ձևերի իւրացնելը մեր ձեռքի տակ եղած կարճ ժամանակամիջոցում շօշափելի արդիւնքների հասնի, անհրաժեշտ է որ քերականական կանոնները լաւ պարզաբանուած լինեն նախ հայերէնի դասերին, այնպէս որ ռուսերէնի ուսուցիչը կանգ առնի միայն տարբեր ձևերի բացատրութեան վրայ, իսկ

Մնացած դէպքերում բաւականանայ միայն հայերէն տերմինները թարգմանելով։ Ընդհանրապէս, իբրև սկզբունք պիտի ընդունել, որ ռուսաց լեզուի գործնական-տեսական վարժութիւնները հետևեն նոյնանման հայերէն վարժութիւններին։

5. Խօսակցական վարժութիւնների համար պէտք է ծառայեն բազմազան նիւթեր, այն է՝

ա). առօրեայ կեանքի երևոյթներ, մանաւանդ աշակերտական միջավայրը,

բ). պատկերներ,

գ). դասագրքի յօդուածներ, նոյնիսկ հայերէնի դասերին կարդացած յօդուածներ, մանաւանդ դասատուութեան առաջին տարում,

դ). առհասարակ բոլոր դպրոցական առարկաները (պատմութիւն, աշխարհագրութիւն, կրօն, թւաբանութիւն, բնագիտութիւն և այլն), այնպէս որ վեցամեայ դասընթացք աւարտողը կարողանայ քիչ թէ շատ կանոնաւոր կերպով ռուսերէն արտայայտել իր ձեռք բերած գիտութիւնները։

6. Գրաւոր վարժութիւնների միջոցին ընդհանրապէս պէտք է հետևել այն կանոնին, որ ինչքան աշակերտը կարողանում է խօսել, այնքան էլ կարողանայ գրել. գրաւորը միշտ պէտք է զուգընթացաբար ընթանայ բանաւորին, և պէտք է խոյս տալ նոր բանաւոր վարժութիւններին անցնելուց, եթէ նախորդների գրաւոր ձեւակերպութիւնը իւրացւած չէ։

## Ծ Ր Ա Գ Ի Ր

### Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս).

### 1. Բանաւոր

Վարժութիւններ բանաւոր. բառեր և նախադասութիւններ շրջապատող աշակերտական կեանքից և

*հայերէն անցած յօդւածներից։ Գաղափար սեռի մասին* муж., жен. и сред. роды *(գործնականապէս՝ առանց վերջաւորութիւնները սովորելու)․ համարել մինչև հարիւր։*

*Գրագիտութիւն։ Կանոնաւոր ընթերցանութիւն։ Նախապատրաստական վարժութիւններ յօդւածների բովանդակութիւնը պատմելու հարց ու պատասխաններով։ Բերանացի կարճ ոտանաւորներ։ Համարել մինչև 1000։*

о *և* а *կարդալը։ Շեշտւած* е послѣ шипящихъ.

## 2. Քերականութիւն

*Ձայնաւորներ և բաղաձայններ․ եզակի և յոգնակի թիւ։ Նախադասութեան վերլուծումը հարցերով առանց տերմինների։*

*Ուղղագրութիւնից—*ъ *և* ь *գործածութիւնը,* ы, ю, я послѣ шипящихъ и гортанныхъ, ѣ на вопросъ гдѣ? і *ձայնաւորից առաջ։ Վանկել։*

## 3. Գրաւոր

*Արտագրութիւն։ Թելադրութիւն անցած նիւթերից և գրաւոր վարժութիւններ քերականութիւնից։ Անգիր սովորածի գրութիւն։*

## Դ. ԴԱՍԱՐԱՆ *(շաբաթական 5 դաս).*

## 1. Բանաւոր

*Վարժ ընթերցանութիւն։ Պատմութիւն անցած նիւթի նախ հարցերով և ապա առանց հարցերի։ Բերանացի ոտանաւորներ։ Վարժութիւններ նախդիրների և նախադաս մասնիկների գործածութեան մէջ։ Համարել ամբողջական մեծ թւերով (քանակական և դասական)։*

## 2. Քերականութիւն

*Առարկայի, գործողութեան և որպիսութեան անունները։ Պարզ նախադասութեան վերլուծումը տերմիններով։ Գոյականի և անձնական դերանուան հոլովումը հարցերով. ներկայի, անցեալի և ապառնիի (անկատար) խոնարհումը հարցերով։ Գաղափար արմատի, նախադաս և յետադաս մասնիկների մասին։ Ուղղագրութիւնից—անորոշ լսուող ձայնաւոր և բաղաձայն հնչիւնների գրութիւնը.* ═ е ═ бѣглое ═ ё ═ о ═ ѣ — *յաճախ գործածուող արմատների մէջ։*

## 3. Գրաւոր

*Շարունակութիւն նախորդ վարժութիւնների։ Գրաւոր պատասխաններ ուսուցչի տուած հարցերին։*

# Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս).

## 1. Բանաւոր

*Ընթերցանութիւն աւելի բարդ յօդուածների։ Պատմութիւն հարցերով և առանց հարցերի։ Բերանացի ոտանաւորներ։ Վարժութիւններ մանաւորապէս հայերէնից տարբեր խնդրառութիւն ունեցող բայերի գործածութեան մէջ։ Վարժութիւններ բայերի տեսակների (*виды*) գործածութեան մէջ։*

## 2. Քերականութիւն

*Գոյականի հոլովումը և բայի կանոնաւոր խոնարհումը տերմիններով։* Виды, *դերանուն, թուական անուն, մակբայ, շաղկապ, նախդիրներ և ձայնարկութիւն։*

*Ուղղագրութիւնից* — о *և* е *բարդ բառերի մէջ, կոկորդային բաղաձայնների փոփոխութիւնը։* ѣ *ունեցող գործածական արմատների աղիւսակը հետզհետէ կազմել։*

### 3. Գրաւոր

*Բացի նախորդ վարժութիւններից, փոխադրութիւններ անցած կարճ յօդուածների։*

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (*շաբաթական 4 դաս*).

### 1. Բանաւոր

*Ընթերցանութիւն, պատմութիւն սեփական բառերով։ Յօդուածի բաժանումը բաղկացուցիչ մասերի։ Յօդուածի համառօտութիւն։ Անգիր արած ոտանաւորների բովանդակութեան պատմութիւն այն դէպքերում, երբ դրանից ոտանաւորի գեղեցկութիւնը չի կորչում։*

### 2. Քերականութիւն

*Ածական և թւական անունների և դերանուան հոլովումը։ Մակբայի սովորական կազմութիւնը։ Գլխաւոր և երկրորդական նախադասութիւնների տարբերելը։ Վարժութիւններ յարաբերական դերանուան գործածութեան մէջ։*

### 3. Գրաւոր

*Բացի նախորդ վարժութիւններից, փոքրիկ շարադրութիւններ նախօրօք դասարանում ուսուցչի օգնութեամբ մշակուած նիւթի մասին։*

---

# X. ԹՒԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

*Թւաբանութեան դասաւանդութեան արդիւնքները նայելով նրան նւիրուած ժամանակին և ույժերին՝ մինչև հիմա նաև աւելի կուլտուրական երկրներում՝ հա-*

մեմատաբար աննշան են եղել։ Այս երևույթը վերագրում է հետևեալ պատճառներին։

ա. Այս առարկայի վերացական և միևնոյն ժամանակ խիստ հետևողական բնաւորութիւնը։ Այս առանձնայատկութեան պատճառով մանկավարժութիւնը դիմել է զանազան զննական միջոցների (միայն ներկայումս 200-ից աւելի տեսակ են դրանք) և մեթոդական այլ և այլ եղանակների օժանդակութեանը, բայց այս ամեն չարիքը մասամբ են մեղմացրել, սակայն արմատախիլ անել այն անկարող են եղել։ Զննական միջոցների՝ մատերի, խորանարդների, համրիչի եայլն չափազանց տեղի ու անտեղի գործածութիւնը շատ անգամ ստորին դասարաններում սպասածին հակառակ հետևանքների է հասցրել։ Աշակերտները կարողանում են այդ միջոցներով խնդիրներ լուծել, իսկ առանց դրանց անճարացած են մնում, քանի որ նրանց մէջ վերացուցումը (աբստրակցիա) անկատար է մնացած լինում։

բ. Շատ դպրոցներում գլխաւորապէս վերացական թւերով խնդիրներ են լուծում կամ նաև խառն ի խուռն բարդ, անբնական կազմութեամբ անւանական թւերով խնդիրներ, որոնք չափազանց շատ ժամանակ են խլում ի վնաս գործնական բանաւոր խնդիրների։ Այդ եղանակներից թէ մէկը և թէ միւսը փոխանակ հարցասիրութեան՝ միայն անտարբերութեան, թմրութեան և յուսահատութեան պատճառ են լինում։ Միայն կեանքից ու դպրոցական գիտելիքներից բնականօրէն բղխած խնդիրները մեծ և օրգանական համախմբութեան վերածւած՝ կարող են վառ հարցասիրութիւն առաջացնել մանկան մէջ և ցանկալի արդիւնք տալ։ Ներկայումս մանկավարժութիւնը շատ ծանրանում է այս կէտի վրայ և այս սկզբունքով կազմւած խնդիրների ժողո-

վածունները առանձին ուշադրութեան են արժանացել։

գ. Շատ դասատուներ քայլ առ քայլ օգնում են աշակերտներին կամ այսպէս անւանեալ դասարանական և ոչ թէ անհատական լիակատար լուծումներ են պահանջում ամեն մէկից։ Այսպիսով աշակերտների մէջ ինքնավստահութիւնը և ինքնօգնութեան զգացմունքը իսպառ մեռնում է։

դ. Դասատուներն առհասարակ խաբւում են ընդունակների յառաջադիմութեամբ, թոյլերն ու դանդաղամիտները հետզհետէ յետ են ընկնում և շուտով բոլորովին վհատում։

ե. Թոյլ յիշողութիւն ունեցող աշակերտները մեծ դժւարութեամբ են սովորում բազմապատկութեան աղիւսակը, մանաւանդ երբ այս բանը յիշողութեան գերակշռութեան շրջանում չի վերջանում։

զ. Չարիքների մէջ մեծ տեղ են բռնում աւանդելի նիւթի աւելորդ տարրերը և աննպատակ մանրամասնութիւններն ու կուտակումները, անյաջող բաշխումը (դասաւորութիւն) ըստ հասակի, ինչպէս նաև թւաբանութեան՝ միւս առարկաների հետ առնչութիւնից զուրկ, սոսկական դիրքը դասընթացքում։ Նիւթին վերաբերեալ ահա այս վերջին կէտերն են, որ ծրագրի համար մեզ գլխաւորապէս պէտք է զբաղեցնեն։

Թւաբանութեան չորս գործողութիւնները գործադրելով երեք տեսակ թւերի՝ ամբողջ, տասնորդական և հասարակ կոտորակների վրա՝ 12 տեսակ խնդիրներ են կազմում. և որովհետև այս թւերը լինում են վերացական կամ անւանական, հետևաբար մենք իսկապէս 24 տեսակ գործնական ու տեսական խնդիրներ լուծելու պահանջն ենք զգում։ Այս հիմնական խնդիրներն իրար հետ կապելով ու զանազան խմբակցութիւններ կազմելով՝ նորանոր բարդութիւններ են

առաջացնում։ Ահա այս տարրերից կազմուած աննպատակ կերպով խճողուած խնդիրներն են, որ չափազանց ծանրաբեռնում են թուաբանութեան դասաւանդութիւնը։

Վերջին ժամանակներս թուաբանութեան դիդակտիկայի մէջ բարենորոգչական ձգտումները առանձնապէս կենտրոնանում են նիւթի նպատակայարմար ընտրութեան շուրջը։ Այս նիւթերը բաժանւում են կարևոր, ցանկալի և աւելորդ տարրերի։

Ա. Պարզ ժողովրդական դպրոցների համար աւելորդ նիւթեր համարւում են.

ա. միլիոնաւոր թւերով գործողութիւնները.

բ. աւելի քան երկու անուանական թւեր պարունակող խնդիրները.

գ. թւի, կոտորակի և այլն գաղափարների սահմանաւորումը (դէֆինիցիաները).

դ. պարբերական կոտորակները հասարակի վերածելը.

ե. խառնուրդի բարդ խնդիրները, շղթայի կանոնը, հատուցման ժամանակամիջոցին (մուրհակի) վերաբերեալ և այլ շինծու անբնական խնդիրներ, որոնք գործնական կեանքի պահանջներից չեն բղխում։

Բ. Կարեւոր նիւթերը, որոնք նաև մեր 4-ամեայ և 6-ամեայ դասընթացքով դպրոցների համար պէտք էր ի նկատի ունենալ, հետևեալներն են.

ա. բերանացի խնդիրներ վերացական և անուանական թւերով, սակայն ոչ թէ 1000-ի շրջանում անխտիր, այլ 100-ի, իսկ սրանից աւելի թւերից միայն կլորները մէջ բերելով. այս տեսակ խնդիրները՝ իբրև կեանքի մէջ ամենագործնականները՝ պէտք է շարունակ ամեն մի դասարանում այլ նիւթերից անկախ՝ վարժութեանց առարկայ դառնան.

բ. միլիոնի շրջանում գրաւոր չորս գործողու-

թիւնները. վերացական և անուանական երկու տեսակ թւերով.

գ. գործնական կեանքում հանդիպող $^1/_2$, $^1/_4$, $^1/_8$, $^1/_3$, $^1/_6$, $^1/_5$ և $^1/_{10}$ և տասնորդականներից՝ 0,1—0,001 չորս գործողութիւնները.

դ. գործնական խնդիրներ ամբողջ ու կոտորակ թւերով առ ու ծախքի վերաբերեալ և խնդիրներ ժամանակի, տարածութեան, շահի, գեղջի, խառնուրդի և ընկերութեան այն կազմութեամբ, ինչ կազմութեամբ որ նրանք պահանջւում են իրական կեանքում։

Գ. Ցանկալի են համարւում աւելի բարձր կամ նպաստաւոր հանգամանքների մէջ գտնւող քաղաքային դպրոցների համար կոտորակների մանրամասնութիւնները և թւերի քառակուսի ու խորանարդ արմատները, գործնական թւաբանութեան աւելի բարդ պայմաններով խնդիրները։

Նիւթերի ընտրութիւնը առարկայի կամ օբեկտի նկատմամբ քննութեան առնելուց յետոյ՝ պէտք է ի նկատի ունենանք այս խնդրի նաև սուբեկտիւ կողմը, այսինքն աշակերտների մտաւոր զարգացման աստիճանները զանազան տարիներում, որպէսզի ուսուցման նիւթի դասաւորութիւնը աւելի նպատակայարմար լինի։

Գերմանական նորագոյն հեղինակաւոր մեթոդիկոսներից Հարտմանը՝ այս նպատակով իր երկարամեայ հետազօտութեանց հիման վրայ գտել է հետեւեալ 6 հիմնական աստիճանները, նախադպրոցական կեանքից սկսած, որ մասնագէտների շրջանում առանձին ուշադրութեան է արժանացել։

ա. աստիճանը 1—3 տարեկան հասակն է, երբ նրանց մէջ գերակշռում է տպաւորութիւնների ստացումը առանց այլ և այլութեան։

բ. 3—6 տարեկան հասակը—պարզ վերարտադրության շրջանն է, երբ մանուկն սկսում է գիտակցորէն վերաբերուել շրջապատին։

գ. 6—8 տարեկան հասակը ոյժերի ազատ զարգացման շրջանն է։

դ. 9—11 տարեկան հասակում գերակշռում է մեքենայական յիշողութիւնը։

ե. սատիճանը 11—13 տարեկան հասակը, երբ որ հասկացողութիւնն սկսում է առաջաւոր դեր կատարել և

զ. սատիճանը 13—15 տարեկան հասակը, հասկացողութեան գերակշռութեան շրջանը։

Հարտմանն այսպէս քննութեան է առել նաև նախադպրոցական շրջանը, ցոյց տալու համար, թէ մանուկներն ինչպիսի թւաբանական պաշար են բերում ընտանիքից։ Նրա հետազօտութիւնը 15 տարիների ընթացքում ցոյց է տուել, որ 6 տարեկան մանուկներից 66 % կարող էին մինչև 10 համարել, իսկ ինչ վերաբերում է այս թւերին վերաբերեալ քանակական մտապատկերներին, համարեա բոլորի մէջ էլ խառնաշփոթ են եղել։ Մեր հայ աշակերտների դպրոցական կեանքը թէև աւելի ուշ է սկսւում, բայց և այնպէս նոյն երևոյթը հանդէս է գալիս սկսնակների մէջ։

Թւաբանութեան դասընթացքի յառաջադիմութիւնը բնորոշւում է նախ և առաջ թւերի քանակութեամբ և ապա հետզհետէ գործողութեանց բարդութեամբ ու թւերի տեսակներով։

Սկզբները 1—10 ամեն մի միաւորի յաւելումը առանձին դասի նիւթ է լինում, ապա հետզհետէ աւելի մեծ թւերի յաւելումը։

# ԾՐԱԳԻՐ

## Ա. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս)

Մեր դպրոցական շրջանը 7—9 տարեկան մանուկներով սկսելով՝ մենք գործ պիտի ունենանք այնպիսի աշակերտների հետ, որոնց մէջ գլխաւոր դեր պիտի կատարեն ազատ զարգացումը և ապա յիշողութեան դերակշռութեան սկզբնաւորութիւնը։

Այս դասարանի Թւաբանութեան նիւթ 1—20 ընդունելով՝ այստեղ կարող ենք աւանդել այս թւերի գաղափարները, նրանց շարքերը, 4 հիմնական գործողութիւնները և սրանց պարզ կապակցութիւնները՝ գլխաւորապէս բերանացի։ Բաժանման գործողութեան վերաբերեալ միայն երկարութեան չափելու և պարզորէն բաժանելու գաղափարները կտանք սկզբները, իսկ վերջը նաև՝ բովանդակութեան, ի հարկէ այս ամենը յատուկ զննական միջոցներով։ Հետևելով մարդկութեան զարգացման ընթացքի ցուցմունքներին՝ տեսնում ենք, որ բազմապատկութեան ու բաժանման գաղափարները շատ ուշ են կազմւել և աւելի ուշ գիտութեան մէջ գործադրւել։ Հետևաբար այս բնական ընթացքն ի նկատի ունենալով՝ պէտք է նախ ուսուցանենք միայն գումարումն ու հանումն և ապա այս երկուսից դուրս բերենք բազմապատկումն ու բաժանումը՝ իբրև կրճատ եղանակներ։

Այս դասընթացքի մէջ կոտորակներից կարող են մտնել $^1/_2$, $^1/_4$ և $^1/_5$, իսկ անւանական թւերից՝ սաժէն, արշին, վերշոկ, օր, շաբաթ և ամիս։

## Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 5 դաս).

Թւերի շրջան 1—100 տասնաւորներով ու միա

ւորներով։ 4 գործողությունները՝ գլխավորապես բանավոր։ Գրավոր խնդիրները ձևով ու բովանդակությամբ դեռ նման են բանավորին։

Մանուկների յիշողութեան գերակշռութեան այս շրջանում պէտք է յաղթել տանք բազմապատկութեան աղիւսակի դժւարութիւնները, աւելի բազմակողմանի կերպով անցնենք գումարումն ու հանումը։ Առանձին ուշադրութեան առարկայ պէտք է դարձնենք նպատակայարմար բանաւոր եղանակներով լուծումը (թւերը նախ մօտաւոր կլոր թւերի վերածելով)

Կոտորակներից $1/3$, $1/6$, $1/8$ և $1/10$ գործադրել ժամանակի, տարածութեան, ծանրութեան ու դրամի քանակութեանց և վերացական թւերի մասերը գտնելու համար զանազան խնդիրներում։ Անւանական թւերից՝ նաև ռուբլի, կոպէկ, փութ, ֆունտ, արշին, սաժէն, վերշոկ։

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 4 դաս).

Թւերի շրջան 1—1000 չորս գործողութիւններով։

Այս դասարանում հետզհետէ զատւում են բանաւոր խնդիրները գրաւոր խնդիրներից և վերջինները ստանում են իրենց առանձնայատուկ բովանդակութիւնները։ Անւանական թւերը դեռ պարզ են, երկու անունով միայն մէջ են բերւում ամեն մի խնդրի մէջ (փութ ու ֆունտ, արշին ու վերշօկ և այլն)։ Աւելի ընդարձակ վերածումներն ու անդրադարձումները հետևեալ դասարաններին են վերապահւում։ Անւանական թւերով խնդիրները պէտք է այս դասարանից սկսած համախմբւեն որոշ իրաշրջանների շուրջը, ինչպէս որ բացատրւած է այս բացատրութեանց հիմնական սկզբունքների բ. կէտում։ Ժամանակի (նաև տարւայ օրերը), ծանրութեան (փութ, ֆունտ, մսխալ), երկա-

րութեան (մղոն, վերստ, ոտք) և դրամական չափերը շուկայի, տան, խոհանոցի, պարտէզի շրջաններից վեր առած խնդիրների մէջ այս դասընթացքի նիւթերը պէտք է կազմեն։

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 3 դաս)

1—1,000,000-աւոր վերացական ու բարդ անուանական թւերով խնդիրներ։ Տասնորդական կոտորակների 4 գործողութիւնները, 1—10 յայտարար ունեցող հասարակ կոտորակների չորս գործողութիւնները։ Հասարակ կոտորակները տասնորդականի և վերջինս հասարակի վերածելը։ Քառակուսի և խորանարդ չափերը։

Միութեան վերածելով 3 յայտնի անդամների միջոցով 4-րդի գտնելը։ Ռուսական համրիչով և առանց այս գործիքի առ ու ծախքի խնդիրներ լուծել տասնորդական կոտորակներով, օրինակ՝ ի՞նչ արժէ $21^3/_4$ ֆունտը, եթէ 1 ֆ. արժէ 2,23 կոպէկ։ Տոկոսի ու զեղչի կանոնները՝ միութեան վերածելով, իսկ հատուցման ժամանակակէտին վերաբերեալ խնդիրները զանց առնել՝ իբրև կեանքի սովորական պահանջներից դուրս տարր։

Խնդիրների իրաշրջանները՝ բնական գիտութիւնները, աշխարհագրութիւնը, պօստն ու երկաթուղին, մակերևոյթներն ու ծաւալը, գնումն ու վաճառումը։

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 3 դաս).

1. Բաժանելիութեան նշանացոյցները մինչև 10 թիւը, բացի 7-ին վերաբերեալից։ Ընդհանուր բաժանարար; փոքրագոյն բաժանելի։ Պարզ ու բարդ երից կանոն միաւորի վերածումով։

2. Հասարակ կոտորակների վրայ բոլոր չորս գործողութիւնները։ Պարբերական կոտորակի վերածումը հասարակի և ընդհակառակը։

Խնդիրները վերցնել նախընթաց դասարանում նշանակուած իրաշրջաններից, երկրաչափական ձևագիտութիւնից և առնին տնտեսութիւնից մանաւանդ օրիորդների համար, իսկ տղաների համար աշխատութեան ու ժողովրդական տնտեսական շրջաններից։ Այս ու հետևեալ դասարանում նմանօրինակ խնդիրները պէտք է բանան աշակերտների աչքերը տնտեսութեան վրայ և առողջ դատողութիւն առաջացնեն նրանց մէջ՝ հաշւով ու խելացի կառավարւելու համար։

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 3 դաս).

Բարդ տոկոսների մասին գաղափար տալ մի քանի խնդիրների միջոցով։ Ընկերութեան կանոն, ակցիա և դիւիդէնտ՝ այս կանոնի հետ կապւած։ Խառնուրդի կանոն իրական կեանքում սովորական խնդիրների շրջանում։

Օտարազգի գլխաւոր դրամների արժէքների մասին գաղափար։ Զուտ ոսկին իբրև հիմնական չափ զանազան դրամների և ապրանքների։ Գնահատութիւն։

---

# XI. ԵՐԿՐԱՉԱՓԱԿԱՆ ՁԵՒԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Ձևագիտութիւնն դպրոցական այն գիտելիքն է, որը իր մէջ ամփոփում է երկրաչափութեան և երկրաչափական գծագրութեան այն տարրերը, որոնք որ անմիջապէս և գործնական միջոցներով զննելի ու չափելի

ձն և գործնական նշանակութիւն ունեն։ Սովորական մեթօդով երկրաչափութիւն աւանդող դասատուն նկարների կամ ձևերի ճշտութիւն չի պահանջում, այլ միայն թէօրէմաների ճիշտ ապացոյցներ. իսկ երկրաչափական գծագրութեան ուսուցիչն ընդհակառակը ձևերի մասին գաղափար է տալիս, միևնոյն ժամանակ նրանց գործիքներով ճիշտ ներկայացնելով առանց մաթեմատիքական ապացոյցների։ Ձևագիտութիւնը քննութեան է առնում գլխաւորապէս իրականութեան մէջ գոյութիւն ունեցող ձևերը, իսկ նկարչութիւնն ուշադրութիւն է դարձնում ձևերի էսթետիքական կողմի վրայ։

Ձևագիտութիւնը չորս տեսակ գործ կամ անելիք ունի.

ա). տարածութեան ձևերը՝ մարմինները, մակերևոյթներն ու գծերը նկարագրելը և աշակերտներին նրանց մասին պարզ գաղափարներ տալը.

բ). տարածութեան ձևերի, գիրքերի ու մեծութեան մէջ որոշ օրէնքներ ճանաչել տալը.

գ). այս ձևերը գծագրելով ներկայացնել և կամ զանազան նիւթերից իբրև շօշափելի առարկաներ ձեւակերպել տալը, և վերջապէս

դ). տարածութեան այդ ձևերը չափել հաշւել տալը։

Այս առարկան վարժեցնում է աչքերը ճիշտ զըննողութեան, միջոց է տալիս իրերի ձևերի ու չափերի մասին պարզ գաղափարներ կազմելու, սրում է աշակերտների դատողութիւնն ու սովորեցնում է ճիշտ եզրակացութիւններ անել։ Ձևագիտութիւնը գործնական մեծ նշանակութիւն ունի արհեստաւորի համար. համարեա բոլոր լաւ արհեստաւորները պէտք ունեն չափի, քանոնի և անկիւնաչափի և կամ սրանցից գէթ մի երկուսին։ Ընտիր ձեռագործ արտադրելն առանց այս գործիքների կամ շատ դժւար է կամ անհնարին։ Երկ-

րագործն էլ պէտք է երկրաչափական գործնական հըմտութիւն ունենայ։

Ուսուցման նիւթերի ընտրութեան ու դասաւորութեան գործում կարևոր է հետևել բնական ընթացքին։ Դեռահաս մարդու հարցասիրութիւնն իսկապէս գրաւում են ռէալ իրերը և ոչ թէ վերացական ձևերը. հետևաբար պէտք է առաջնորդենք սաներին ձեռարւեստի արտադրութեանց, բոյսերի և այլ իրերի մէջ զննել ու գտնել իշխող հիմնական ձևերը, որոնք կամ էսթետիքական կամ գործնական նշանակութիւն ունեն։ Նրանք պէտք է վերահասու լինեն, որ շատ անգամ այս երկու նպատակը միացած են լինում միևնոյն առարկայի մէջ։ Երբ որ աշակերտը համոզւում է, թէ օրինակ բոյսերի համար ինչ գործնական նշանակութիւն ունեն նրանց բնի, տերևների կամ ծաղիկների այս կամ այն առանձնայատուկ ձևերը, կամ թէ չէ՝ շինութեան համար ինչ նշանակութիւն ունեն կամարները, գլանաձև կամ խողովակաձև սիւները ամրութեան տեսակէտներով, այն ժամանակ ձևագիտութիւնը նրանց համար կը դառնայ ոչ թէ մեռած, այլ կենդանի գիտելիք։ Հետևաբար աւելի նպատակայարմար պէտք է համարել ո՛չ թէ այսպէս անւանեալ ռէալ—գեոմետրիքական մեթօդը, այլ հոգեբանական-գենետիքական դասընթացքը։ Առաջինը մինչև վերջերս գործադրւած եղանակն էր. Նախ ներկայացնում էին ձևերի իդէալական աշխարհը և ապա նրանց համեմատում իրական աշխարհից վերառածների հետ։ Հոգեբանական դասընթացքի ելակէտն ընդհակառակը ռէալական աշխարհն է. սրանից են ապա հետզհետէ հանել տալիս իդէալական ձևերը։ Առաջինը մասնագիտական, իսկ երկրորդը դպրոցական գիտութեան մեթօդն է։

Վերևը տված բացատրություններից ակներև է, որ ամեն մի նոր դաս պէտք է սկսել ուէալ իրերից, ապա պէտք է անցնել այն երկրաչափական մարմիններին, որ նրանց ընդհանուր կամ իդէալական գաղափարն են ներկայացնում։ Ամեն մի մարմնից պէտք է նախ անցնել նրա մակերևոյթներին, ապա գծերին ու անկիւններին և ոչ թէ հակառակ ընթացքով սովորեցնել։ Այս բացատրութիւններից ինքն ըստ ինքեան պարզ է նոյնպէս, որ բոլոր տեսակ գծերը, մակերևոյթները և այլն առանձին առանձին դասընթացքներով աւանդելը նպատակայարմար չէ համարւում, թէև պարզ կէտերից ու գծերից սկսելն աւելի հեշտ երևար։

Կանոններն (թէօրէմաները) ու բանաձևերը (ֆորմուլաները)։

Ինչ վերաբերում է ձևագիտական ճշմարտութեանց՝ այս առարկայի դասաւանդութեան ժամանակ էլ պէտք է ղեկավարւենք մանկավարժական այն հիմնական սկզբունքով, որ ուսուցիչը պէտք է միայն առաջնորդէ ճշմարտութիւնները գտնելում։ Աքսիօմաների իսկութիւնը պէտք է ստուգեն աշակերտները անմիջական փորձով։ Երկրաչափական գաղափարների սահմանահատումը (դէֆինիցիա) խիստ գիտական չպէտք է լինի. օրինակ՝ փոխանակ ասելու «քառանկիւնին չորս ուղիղ գծերով շրջապատւած ձև է», կարող ենք այսպէս բացատրել տալ. քառանկիւնին մակերևոյթ է, նա չորս կողմ ունի, չորս ներքին ու չորս արտաքին անկիւն։ Կանոնները կամ Թէօրէմաները, ինչպէս յայտնի է, ապացուցանելի ճշմարտութիւններ են. բայց ինչպէս պէտք է ձեռք բերւին նրանք։ Այդ կանոններն իրանց ապացոյցներով պէտք է անշուշտ ոչ թէ պատրաստի ընդունւին աշակերտների կողմից, և ապա անգիր անւին, այլ սաներն ինքեանք պէտք է գործնական միջոցներով դուրս բե-

րեն այդ ճշմարտութիւնները։ Ուսուցիչը միայն տալիս է խնդիր, ցոյց է տալիս ճանապարհը և շեղումների առաջն առնում։

Մի կարգ կանոններ կան, որ կարելի է ապացուցանել ուղղակի չափելով։ Այսպիսի ճշմարտութիւններն անշուշտ նոյն ճանապարհով էլ գտնուած են եղել. օրինակ՝ շրջանի ճառագայթների, քառակուսու անկիւնագծերի հաւասարութիւնը, հաւասարասրունք եռանկիւնների երկու անկիւնների հաւասարութիւնը կարելի է իմանալ անմիջապէս չափելով. որ կոնի ծաւալը հաւասար է իր հետ հաւասար հիմք ու բարձրութիւն ունեցող գլանի մի երրորդին, այդ կարելի՛ է թիթեղեայ կամ խաւաքարտէ դատարկ գլանի մէջ օրինակ աւազ լցնելով ապացուցանել։ Երբեմն էլ՝ կանոնը կարելի է գտնել ուղղակի դիտելով. այսպէս՝ ուղղանկիւն եռանկիւնու սուր անկիւնների գումարը $90^0$ կազմելը կարելի է ցոյց տալ այդ ձեւով թուղթ կտրելով և սուր անկիւնները ծալելով ուղիղ անկեան վերայ բերելով։ Այսպէս ուրեմն մեր տարրական դպրոցներում պէտք է միշտ այսպիսի գործնական միջոցներով երկրաչափական ճշմարտութիւնները գտնելում աշակերտներին առաջնորդենք։ Ապագայում էլ արհեստի մէջ իսկապէս այս գործնական հմտութիւնը միայն կարող կըլինի նրանց օգնել։ Այս ամեն ասածից հեշտ է նաև եզրակացնել, որ տարրական դպրոցը երկրաչափական ճշմարտութիւնները Եւքլիդեան սիստեմով չպէտք է աւանդէ, այլ ազատ, գործնական ընթացքով։

Ֆօրմուլաները։ Որքան կարելի է սահմանափակ թւով և պարզ բանաձևեր պէտք է հանել տալ աշակերտներին և միշտ լիակատար իմաստով կարդալ տալ այդ պայմանական նշանները. այսինքն՝ պէտք է օրինակ ասել՝ ուղղանկիւն քառանկիւնու հիմքի չափը բազմա-

պատկուած բարձրութեան չափով՝ կստանանք նրա մակերևոյթը և ոչ թէ՝ հ. բ=մ տառացի արտայայտութեամբ բանեցնել այս ֆորմուլան։

Այս ճշմարտութիւնները պէտք է բղխեն իսկապէս վեր առած ձևագիտական խնդիրների լուծումից։ Խնդիրներն այստեղ ծանրակշիռ նշանակութիւն ունին. նրանք ամեն մի դասի ելակէտը պէտք է կազմեն։ Նայելով խնդիրների բնաւորութեանը՝ նրանք երկու տեսակ են լինում. ձեւական-երկրաչափական և իրական-երկրաչափական։ Երբ որ առաջադրւում է օրինակ՝ նկարած բազմանկիւնին եռանկիւնու վերածել, սա առաջին տեսակի խնդիրներից է. իսկ եթէ առաջարկւում է վեցանկիւնի հողաբաժինը փոխել նոյն չափով եռանկիւնի հողաբաժնի հետ, այդ արդէն իրական կեանքից վեր առած խնդիր է։ Այս վերջին տեսակի խնդիրներն անպայման աւելի առաւելութիւն ունին. բնութեան մէջ այսպիսի փորձեր անելուց յետոյ՝ դասարանումն էլ աւելի այսպիսի գործնական խնդիրները պէտք է զբաղեցնեն աշակերտներին։

Բայց ձևագիտութեան մէջ կան նաև այլ երեք տեսակ խնդիրներ։ Աշակերտներին նախապատրաստական խնդիրներ էլ են տալիս, որպէսզի նրանք դասարանից դուրս ինքնուրոյն կամ ուսուցչի առաջնորդութեամբ բնութեան ու արհեստագործութեան արտադրութեանց մէջ որոշ ձևեր դիտեն, նկարագրեն ու նկարեն և այսպէս պատրաստուած դասարան գան։ Կան նաև վարժութեան խնդիրներ՝ ուսած օրէնքները արագ ու հմտօրէն գործադրել սովորեցնելու համար։ Այս կարգի խնդիրները կարող են կամ հաշւական կամ ձեւակերպական լինել։ Ձևակերպութիւնը լինում է գծագրական և կամ թէ չէ՝ նիւթական՝ աւազից, կաւից, գաջից, խաւաքարտից, թիթեղից, փայտից կաղպարներ շինելով։ Այս ձևակեր-

պական աշխատությունների ավելի ճիշտ միայուն մտապատկերներ կթողնին և միևնույն ժամանակ ուսուցչին ստուգման շոշափելի առիթներ կընծերկայացնեն՝ իմանալու համար, թէ ինչ չափով իւրացրած են աշակերտները այս կամ այն ձևը և թէ ինչ թերություններ են մնացել։

Ծրագրի հետևեալ նիւթերն ավանդելիս՝ պէտք է ի նկատի ունենալ, որ մինչդեռ տղայոց համար երկրաչափական մարմինների ձևակերպերն ու չափերը մեծ նշանակութիւն ունի, օրիորդաց համար ընդհակառակը՝ ավելի կարևոր է հարթաչափութիւնն իւր բազմազան ձևերով։

## ԾՐԱԳԻՐ

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս)

1. Անկիւնաւոր պրիզմայական ձևերից խորանարդը. ա) նրա տարրերը՝ մակերևոյթներ, կողեր, արտաքին ու ներքին անկիւններ 2 և 3 մակերևոյթներից. բ) գաղափարներ տեղերի մասին՝ առջև, ետև, ձախ, աջ և այլն. գ) գաղափարներ ուղղութեանց մասին՝ հորիզոնական, ուղղահայեաց, զուգահեռական և այլն. դ) անկիւնը և նրա տարրերը. ե) տարածութիւնները. ըմբռնութիւն և գործադրութիւն երկայնութեան չափերի։
2. Քառակուսին՝ իբրև խորանարդի մակերևոյթներից մին. ա) զննում՝ ձև, կողմեր, մակերևոյթ, բովանդակութիւն. մակերևոյթի չափերը. բ) յօրինուածք (կոնստրուկցիա)։

Գործադրութեան համար պէտք են հետևեալ գործիքները. ուղղորդը (ուղղաձիգը գտնելու համար), զուգահեռական դիրքով միացած զոյգ քանոնները (զու-

գանհեռականներ քաշելու համար), կարկինը, չափագիծը (մասշտաբը) և ուղղանկյուն եռանկյունին։

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս)

1. Քառակուսի պրիզման՝ իբրև խորանարդից կազմված մարմին։ Զննություն՝ ինչպես գ. դասարանում։ 2. Քառանիստը կամ ուղղանկյուն քառանկյունին. ա) զննություն ինչպես վերևը. բ) յօրինուածք (ինչպես վերևը). գ) ծաւալի գտնելը։ 3. Ուղղանկյունի եւ եռանկյունի պրիզմաները՝ անցնել քառակուսի պրիզմայի հետ բաղդատական եղանակով։ 4. Քառանկյունի մակերեւոյթի չափելը։ 5. Եռանկյունին՝ տեսակները, յօրինուածքը, չափելը։ 6. Բազմակողմանի պրիզման։ 7. Բազմանկյունին։ 8. Շեղանկյուն պարալելոգրամը, չափելը։ 9. Տրապեցը։ 10. Գլանը. համեմատութիւն պրիզմաների հետ։ 11. Շրջանը և նրա մասերը, 360$^{0}$, յօրինուածք, ամբողջ շրջանի և նրա մասերի չափելը (շառաւիղ, տրամագիծ, շրջագիծ, մակերևոյթ, կիսաշրջան, հատած ու հատուած։) 12. Անցած մարմինների ծաւալների չափելը՝ խորանարդը միութեան չափ ընդունելով։

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս)

Բրգաձեւեր. 1. Քառանկյունի և եռանկյունի բուրգեր՝ համեմատութեամբ. ա) ըմբռնում և համեմատում բաղադրիչ տարրերի ու դիրքերի. բ) բրգաձև մարմինների երկարութեան, մակերևոյթների և ծաւալի չափելը։ (Ծաւալները չափում են թիթեղեայ պրիզմաների և բուրգերի մէջ լցրած ջրով։) 2. Հատած բուրգ՝ նկարագրել առանց չափելու։

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս)

1. Կոն եւ հատած կոն, վերջինս առանց չափելու։ 2. Զւածիրն ու ձւաձևը՝ իբրև գլանի և կոնի հատածներ, սրանց գծագրելը թելով ու կարկինով։ (Չափելը շրջանի ու շրջագծի հիման վրայ)։ 3. Գունդը. ա) Նրա տարրերի համեմատական չափերը. բ. մակերևոյթի և ծաւալի չափելը՝ հիմնւելով եռանկեան, շրջանի և կոնի վրայ։

---

# XII ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Աչքի առաջ ունենալով մեր տարրական դպրոցների աշակերտութիւնը և մեծ նշանակութիւն տալով նկարչութեան դասաւանդութեանը, իբրև մի հանրակրթական առարկայի, կազմւած է այնպիսի ծրագիր, որ հեշտութեամբ կարելի է գործադրել յիշեալ դպրոցներում և մատչելի է միջակ ընդունակութիւնների տէր աշակերտներին։

Բարենորոգութիւնների այս դարում, հասկանալի է, որ նկարչութեան ծրագիրը չէր կարող անփոփոխ մնալ։

Նա էլ ենթարկւեց բարեփոխութեան—վերացւեցին նկարչութեան դասաւանդութեան հնացած մեթոդները, որպէս են՝ նկարչութիւն վերացական առարկաների, նկարչութիւն ցանցի վրայ և ոճային օրնամենտներին տուշ խփելուն երկար ժամանակ նւիրելը։ Երեխաները պէտք է սովորեն այնպիսի եղանակով, որը նրանց աւելի մօտեցնէր բնութեանը և հնարաւորութիւն տար արագ կերպով նկարել իրանց շրջապատող առար-

կաների ձևերը։ Ծրագրի մէջ ցոյց տուած մի շարք վարժութիւններից յետոյ պէտք է աշխատել յիշողութեամբ նկարել մի քանի առարկաներ առօրեայ կեանքից։

Մարդկային միտքը գրաւոր կերպով արտայայտելու երկու միջոց կայ՝ գիր և նկար. վերջինս, թէև համր լեզու է, բայց հասկանալի է բոլոր ազգերին և ժողովրդներին, և այդ իսկ պատճառով պէտք է սովորեցնել աշակերտներին նաև նկարների, պատկերների միջոցով արտայայտել իրանց մըտքերը։ Յաճախ բաւական է լինում ցոյց տալ մի հատիկ նկար կամ պատկեր և դրանով միանգամից կարելի է ազատուել անվերջ աւելորդաբանութիւններից։ Այդ նպատակին հասնելու համար հարկաւոր է տեսական ուսումնասիրութեան հետ զուգընթացաբար առաջ տանել և անցածի գործնական վարժութիւնները, նկարելով՝ սկզբում պարզ առօրեայ առարկաներ, իսկ այնուհետև աւելի բարդ իրեր։ Երկրաչափական մարմինների վրայ չպէտք է ծանրանալ։ Երկրաչափական մարմիններից պէտք է օգտուել իբրև հիմնական ձևերից և երբէք նրանք չպէտք է վերջնական նպատակ դառնան. ուստի և հարկաւոր չէ երկար ժամանակ նուիրել այդ մարմիններին տուշ խփելու համար։ Առօրեայ առարկաների գունաւորումն որոշ դեր է խաղում նկարչութեան մէջ, և այդ առանձնապէս սիրում են երեխաները. այդ պատճառով անհրաժեշտ է, որ աշակերտները ծանօթանան թէ գունաւոր մատիտներով և թէ ջրաներկերով նկարելու կերպերին. սակայն այդ բոլորը պէտք է կատարուի միմիայն հիմնական գոյներով, որովհետև աշակերտները գեղարուեստագէտներ դառնալու համար չէ, որ պատրաստւում են։ Նկարներին տուշ խփելիս և զանազան գունաւորում տալիս, հարկաւոր է ուշադրութիւն դարձ-

նել նախ լուսաստուերների վրայ, այսինքն գլխաւոր և երկրորդական ստուերների վրայ, իսկ այնուհետև կիսատոների և ռեֆլէքսների վրայ։ Զննական պերսպէկտիւի հետ պէտք է ծանօթացնել՝ մակարդակները կըրճատուած ձևով նկարելիս, իսկ երկրաչափական մարմինների և առօրեայ կեանքի առարկաների նկարման ժամանակ պէտք է բացատրել հորիզոնի, տեսողութեան կենտրոնի, հեռացող զուգահեռական գծերի նշանակութիւնը, երբ վերջին գծերը զուգահեռական են տեսողութեան գլխաւոր ճառագայթին և կամ երբ նրանք կրճատւում են միացման պատահական կէտում։ Բացի դրանից հարկաւոր է բացատրել նաև պերսպեկտիւային մասշտաբի նշանակութիւնը։ Ամբողջ նկարչութիւնը պիտի կատարուի ձեռքով, առանց գործիքների օգնութեան, այնպէս որ աշակերտները կարողանան զարգացնել աչքի չափը և ձեռքի դաստակը, պարզորոշ ըմբռնեն առարկաների ձևերը, կարողանան համեմատական գեղեցիկը ջոկել տգեղից և առհասարակ կարողանան գեղասիրական ճաշակ զարգացնել և գեղեցկի մասին հասկացողութիւն կազմել։ Այսպիսի նկարչութիւնը օգուտ կտայ սաներին, և նրանք ապագայում հնարաւորութիւն կունենան իրանց ձեռք բերած գիտելիքներից և գործնական միջոցներից օգտուելու՝ ընտրած մասնագիտութեան մէջ։

## ԾՐԱԳԻՐ

### Ա. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Նկարել ուղիղ գծեր, ուղղահայեաց, հորիզոնական և թեք։ Զուգահեռական գծեր։ Անկիւններ՝ ուղիղ, բութ, սուր։

Ձևեր-եռանկիւններ, քառանկիւններից՝ ուղղանկիւնի, քառակուսի և շեղական։

Գծերի բաժանումը աչքի չափով կենտ և զոյգ հաւասար մասերի։

Կանոնաւոր բազմանկիւններ։ Զուգընթացաբար համապատասխան նախշեր։

Կոր գծեր. կոր ձևերից՝ շրջան. տրամագիծ, շառաւիղ։

Բազմանկիւնները շրջանի մէջ։

Ընդօրինակութիւն գրատախտակից՝ ուսուցչի նկարած հարթ օրնամէնտների, նախ պարզ, հետզհետէ աւելի բարդ՝ ուղիղ և կոր գծերից։

Դասարանում ուսուցչի ցոյց տուած լաւ ծանօթ հասարակ, տափակ, ուղղագիծ և կորագիծ առարկաների ուրւագծումը յիշողութեամբ. օր. գիրք, տետրակ, քարետախտակ, շրջանակ, ծրար, պայտ, օղակ, խնձոր, գնդակ...

## Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Կոր ձևերից՝ ձուածիր, ձուաձև։

Ծանօթութիւն հիմնական գոյների հետ։

Դասարանում նկարուած անկիւնաւոր նախշերի ձևով՝ տանը ծանօթ գոյնի թղթերից կտրատել մասեր և այդ մասերից կպցնելով կազմել նոյն տեսակ նախշեր։

Ընդօրինակութիւն գրատախտակից համեմատաբար աւելի բարդ ուղղագիծ և կորագիծ հարթ օրնամենտների։

Ծանօթ պարզ առարկաների բնականից նկարչութիւն (գծաւոր)՝ ուղղագիծ և կոր գծերով. օր. դուռ, լուսամուտ (ճակատի կողմից), շրջանակ, կացին, մանգաղ, գերանդի, թի, բահ, տանձ, ակնոց, ձու, սալոր,

բոզէտ, բորդիւր, պարզ տերևներ։ Նոյնը և յիշողութեամբ։

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

Գաղափար խղնջաձև և ոլորաձև գծերի մասին։

Անկանոն բազմանկիւնիներ։

Հեռանկարի (պերսպէկտիւ) տարրական հիմունքները՝ դիտողութեամբ։

(Նկարել հարթ ուղղագիծ մակերևոյթներ՝ կարճացած ձևով)։

Երկրաչափական մարմիններ—խորանարդ. քառանկիւն հատուածակողմ (նկարել իսկականից)։ Տանը կտրատել յիշեալ մարմինների բացուած ձևերը կարտոնից և կպցնելով մարմիններ կազմել։

Գրատախտակից ընդօրինակութիւն ոճաւոր օրնամենտների։

Գունաւոր մատիտների գործածութիւնը։

Տերևների ուրւագծումը իսկականից, հասարակից մինչև խաղողի տերևը։

Բնականից նկարել թիթեռներ. պարզ ծաղիկներ, խղունջներ, սարէններ, փետուրներ և այլն։ Նոյնը և յիշողութեամբ։

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Հեռանկարի հիմնական սկզբունքները (տեսողութիւն)։

(Նկարել հարթ շրջանակներ կարճացած ձևով)։

Երկրաչափական մարմիններ (կրկնել խորանարդը). բուրգ (մի քանի հիմքով).. կոն, գլան. գունդ (նկարել իսկականից), գլխաւոր ստուերներով։

Երկրաչափական մարմիններին նման առարկա-

ների ուրուագծումը. օր. արկղ, պահարան, դոյլ, բաժակ, տակառ, շաքարի գլուխ, ձագար, ձմերուկ և նման առարկաներ։

Բարդ տերևներից օրնամենտներ. վարդանման ծաղիկներ. արմաւենիներ (պալմետկա)։ Նոյնը և յիշողութեամբ նկարել։

Ջրաներկի գործածութիւնը լոկ գոյն տալու համար։

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

Գաղափար լոյսի և ստուերի մասին։

Երկրաչափական մարմիններ զանազան դիրքերով նկարել գլխաւոր և երկրորդական ստուերներով։

Երկրաչափական մարմինների հատած ձևեր նկարել. նոյն մարմինների խմբանկարներ (գրուպպ)։

Կուժեր, սափորներ, վազեր, պտուղներ և այլ գեղեցիկ-ձևաւոր առարկաներ բոլոր ստուերներով, իսկ ծաղիկներ միայն գլխաւոր ստուերներով։ Նոյնը և յիշողութեամբ նկարել։

Համաչափ (սիմետրիք) ձևերի նկարելու վարժութիւններ միաժամանակ երկու ձեռքով, ամերիկական սիստեմով։

Ջրաներկի մի երանգի (տօն) գործածութիւնը (սեպիա, տուշ) կատարեալ ստուերումով։

Ուսուցչի տուած հիմնական տարրերից տանը նախշեր և զարդեր յօրինել (ստիլիզացիա)։

Ծ ա ն օ թ. Նպատակայարմար է այս դասարանից օրիորդաց դպրոցներում աւելի ոյժ տալ օրնամենտային հիւսւածոյ նկարներին. զանազան պտուղների, ճիւղքերի, ողկոյզների յօրինման (ստիլիզացիա), նոյնպէս և տառեր ու մօնոգրամներ կազմելու, որ և կարևոր կլինեն նրանց՝ ձեռագործի ժամանակ։

### Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

Իրեղէններ, խոշոր կահկարասիք. տան իրեր (լամպ, մոմակալ). ողկոյզներ, բարդի, ուռի, ընկուզենի ճիւղեր տերևներով, ամբողջ ծաղիկներ—խաշխաշ, պուտ, վայրի մեխակ, ձնծաղիկ և այլն. փնջեր—եթէ կարելի է՝ ջրաներկերով։ Այս առարկաներից մի քանիսի յիշողութեամբ նկարելը։

Ծանօթութիւն ճարտարապետական ոճերի հետ. Նկարել հայկական ոճի բնորոշ և էական տարրերը։

Համառօտ ծանօթութիւն օտար ոճերի հետ՝ տպագրուած նկարների միջոցով։

Տարրական ծանօթութիւն պլաստիք գեղարւեստի հետ։

---

## XIII. *ԵՐԳԵՑՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՁԱՅՆԱԳՐՈՒԹԻՒՆ*

### ԾՐԱԳԻՐ

### Ա. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Պարզ ֆրազների և ապա երգերի միջոցով նպաստել աշակերտի լսողութեան, երաժշտական յիշողութեան և ռիթմի զգման զարգացման։ Առաջին կիսամեակում ուսուցիչն է բաղխում տալիս, իսկ երկրորդում իրենք աշակերտները։

### Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Քիչ աւելի բարդ երգեր պարզ չափերով ($^2/_4$ և $^3/_4$), պահանջելով որ աշակերտներն իրենք չափ տան։ Տար-

ւայ վերջին նաև 4/4 չափով երգեր։ Ձայների տևողութեան մասին հասկացողութիւն տալ, վանկերի վրայ նշանակելով կէտեր, նոյնպէս և շնչի տևողութեան մասին։

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Երգել տալ մաժոր առաջին քառունակը, ճանաչել տալով իւրաքանչիւր ձայնի աստիճանը—տեղը քառունակի մէջ։ Քառունակի իւրաքանչիւր ձայնը նշանակել թւանշաններով կամ տառերով (1, 2, 3, 4 կամ ա, բ, գ, դ)։ Երգածը գրել և գրածը կարդալ։ Երկրորդ կիսամեակից՝ նոյնպիսի վարժութիւններ մաժոր երկրորդ քառունակի վրայ (5, 6, 7, 1 կամ ե, զ, է, Ա)=Տևողութեան նշան մի ութերորդ։

Այս երեք դասարաններում աշակերտը պէտք է վարժւի տօնի բարձրութիւնն ու տևողութիւնը ըմբռնելու և գրով արտայայտելու՝ վերոյիշեալ սիստեմով։

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Համեմատութիւն լեզւի և երաժշտութեան մէջ։ Երաժշտական տօն, նրա յատկութիւնները—բարձրութիւն, տևողութիւն, ոյժ, տէմբր։ Ձայնահնչիւնների անունները. օկտաւ։ Բնական մաժոր գամման. բնական մինոր գամման (թւանշաններով կամ տառերով)։ Զարդարանքներ—ընդհարումներ, խաղ։

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս).

Համեմատութիւն լեզւի գրութեան և երաժշտութեան գրութեան մէջ։ Մի գծանի և գծային (հինգ գծանի) սիստեմներ։ Գծային սիստեմի գրութիւն։ Հըն-

գային սիստեմի գրութիւն։ Սոլ և ֆա բանալիներ։ Երգի և շնչի տևողութեան չափերի գրութիւն։ Դիատոնիկ և խրոմատիկ գամմաներ։ Կիսատոներ։ Դիէզ, բէմոլ, բէկար։ Զանազանութիւնը բնական մաժոր և բնական մինոր գամմաների մէջ։ Գծային սիստեմով գրել և կարդալ երկու գամմաները։

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 1 դաս).

Զանազան աստիճաններից կազմել մաժոր և մինոր գամմաներ։ Գամմաների նշանները։ Լադեր։ Հասկացողութիւն եկեղեցական լադէրի մասին և մանաւորապէս հայոց եկեղեցական երաժշտութեան ձայների և կողմերի մասին։ Ասիական և հարմոնիկ մաժոր գամմաների կազմութիւնը։ Կոնսոնանս և դիսոնանս. դիսոնանսի լուծումը։

Թէօրիայի հետ միաժամանակ պէտք է անցնել գործնականը—վարժութիւններ երգելով ու գրելով։ Բոլոր դասարաններում պէտք է անցնել երգեր—ժողովրդական, ազգային և եկեղեցական։ Երգեցողութիւնը պէտք է լինի մենաձայն (սոլօ) և խմբական։ Հինգերորդ տարուց կարելի է երկձայն խմբական երգեցողութիւն սկսել։—Երգերը պէտք է սովորեցնել՝ նրանց հեշտութեան և մատչելիութեան նայելով։ Զպէտք է աշխատել անպատճառ երգերը յարմարեցնելու անցած թէօրիայի դասընթացքին։

# XIV. ՁԵՌԱԳՈՐԾ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Ձեռագործը՝ իբրև պարտադիր առարկայ օրիորդաց ամեն տիպի դպրոցներում, պէտք է միւս աւանդելի կրթական առարկաների հետ համահաւասար իրաւունքներ վայելի։

Մանկավարժութիւնը մեծ կարևորութիւն է տալիս գործին (ձեռքի աշխատանքին), համարելով արհեստի այդ ճիւղը ոչ միայն օգտակար, այլ և կարևոր ու անհրաժեշտ միջոց կրթելու մանկան թէ ֆիզիքական և թէ մտաւոր ոյժերը։

Ձեռագործի կրթական նպատակը պէտք է լինի —զարգացնել երեխայի մէջ ջանասիրութիւն, համբերութիւն, տոկունութիւն, կարգապահութիւն, մաքրասիրութիւն, ճշտապահութիւն, սէր և հակում դէպի աշխատանք առհասարակ և այսպիսով ներդաշնակութիւն մտցնել մանկան ընդհանուր զարգացման մէջ։

Մեր տարրական դպրոցներում ձեռագործի դասաւանդութեան գործնական նպատակն է՝ ընդհանուր նախապատրաստութիւն տալ աղջիկներին իւրացնելու զանազան անհրաժեշտ ձեռագործներ պատրաստելու եղանակները, որպէս զի կարողանան բաւարարութիւն տալ կեանքի առօրեայ պահանջներին, այն է՝ գուլպա գործել, սպիտակեղէն ձևել ու կարել, հասարակ կամ պարզ զգեստ ձևել ու կարել, կարկատան անել և մաշուած տեղերը լցնել։

Վերոյիշեալ նպատակին հասնելու համար ձեռագործի դասաւանդութիւնը պէտք է լինի անպայման դասարանական, խիստ մեթօդիքական կանոններով։ Միևնոյն դասարանի բոլոր աշակերտուհիները պէտք

է կատարեն միատեսակ գործ և միաժամանակ։ Վարժուհու բացատրութիւնները ու ցուցմունքները պէտք է ուղղւած լինեն ամբողջ դասարանին և ոչ թէ ամեն մեկին առանձնապէս։ Յառաջադէմ աշակերտուհիներին տրւում են լրացուցիչ ձեռագործներ։

Ձեռագործի դասարանական դասատուութիւնը հետևեալ առաւելութիւնները ունի.—

1. Հնարաւոր է դարձնում միևնոյն ձեռագործը ցոյց տալ և բացատրել ամբողջ դասարանին միաժամանակ, այսինքն՝ ժամանակ է վաստակւում։

2. Ընդհանուր և միատեսակ գործը եռանդ և մըրցութիւն է զարթեցնում հրեխաների մէջ և

3. Կարգապահութեան է սովորեցնում։

Ձեռագործի դասաւանդութիւնը արդիւնաւէտ դարձնելու համար վարժուհին ոչ թէ պէտք է աշխատի ձեռագործի տեսակները շատացնել և դրանով ծանրաբեռնել առարկայի դասընթացքը, այլ պէտք է ձըգտի, որ աղջիկներն անցածը հիմնովին իւրացնեն։

Շքեղ ձեռագործը չպէտք է դասաւանդւի տարրական դպրոցներում։ Բացառութիւն կարող են կազմել մի քանի զարդակարեր, որ իբրև լրացուցիչ գործ կըտրւեն աւելի յառաջադէմներին։

Բոլոր ձեռագործների հիմնակարերը և տեսակները, այն է՝ ճաղով գործելը, ասեղով կարելը—շուլար, դարձկար, վրակար և այլն, պէտք է նախապէս սովորեցնել օրինակներ (образцы) պատրաստել տալով և այնպէս որ միշտ խիստ յաջորդականութիւն պահպանւի—պարզ և հեշտից պէտք է աստիճանաբար անցնել աւելի բարդին և դժւարին։

Դասարանի մէջ կարած օրինակները կամ կարերը ոչ մի դէպքում չպէտք է թոյլ տալ տանը շարունակել։

Տնային վարժութիւնների համար կարելի է առանձին ձեռագործներ ունենալ։

Ամէն մի նոր տեսակի ձեռագործ սկսելիս պէտք է ծանօթացնել նրա նիւթի յատկութեան, ձեռագործի գործնական նշանակութեան և գործիքների կազմութեան հետ։ Ձեռագործի դասը ձանձրալի չդարձնելու համար անհրաժեշտ է ընդմիջումներ անել և մարմնամարզութեամբ զբաղեցնել աղջիկներին 3—5 րոպէ, մանաւանդ նախապատրաստական դասարաններում։

Ցանկալի է, որ ձեռագործի անհրաժեշտ նիւթեղէնն ու պիտոյքները հոգայ դպրոցի վարչութիւնը. իսկ եթէ այդ անհնարին է, այն ժամանակ վարչութիւնը գնէ բոլոր նիւթեղէնը աշակերտուհիների հաշւով, իսկ չքաւորներին ազատէ այդ ծախսերից։

## ԾՐԱԳԻՐ

### Ա. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

I Ղայթան (шнуръ). II Շերտիկ գործելը (полоска) 2 ճաղով (20 հանգոյց)։ 1. Երեսի աջ հատ գցելը (правая петля). 2. Շուռ-տուած հատ գցելը (лѣвая петля). 3. Ձգողիկ (ластикъ). 4. Շաւիղ (дорожка). 5. Հատ պակասացնելը (спускъ). 6. Հատ վերջացնելը (запускъ).

Սովորած եղանակների գործադրութիւնը ամբողջը կազմելու համար՝

1. Պարկ. 2. Գուլպայի կապ (подвязка). 3. Կրծկալ. 4. Բաշպան, թևնոց և այլն։

Նիւթը.—կապ-թել (вязка).—Դեղնագոյն բամբակէ թել № 8 և ճաղերի համապատասխան №№ (վարժուհու ընտրութեամբ)։

### Բ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Երկարբուկ գուլպա գործելը—10 դաս։
Կար 50 դաս։

Երկարքում գուլպա գործելը:—Գուլպայի բունկը (ճիտքը) (погонокъ)։ ա. Գուլպայի բերան կամ ձգողիկ. բ. Գուլպայի ուղիղ մասը. գ. պակասեցրած մասը. դ. պակասեցնելուց յետոյ ուղիղ մասը:

Գիցքի օրինակներ. (образцы стежковъ)։ 1. Շուլալ 2. Ցետկար 3. Դարձկար:

Կարերի օրինակներ. 1. Երկնակի կար (ֆրանսիական կար)։

2. Ժապաւէն (тесьма) վրակարելը դարձկարով։

Գործադրութիւն.—փոքրիկ բարձի երես, վրան դարձկարով կարած նշանագրով (կոճակների փոխարէն՝ դարձկարով վրակարած ժապաւէն)։

Լրացուցիչ զբաղմունք. 1. Մանկական կրծկալ—անձեռոցիկ (վրան դարձկարով մի նկար)։ 2. Պարկ:

Նիւթը.—խաիր գործւածք (ткань рогожка)։ Հարթակարի թել № 20 (բացկապոյտ գոյն)։ Ասեղ № 5:

Կարի համար—դամեստիկ, կոճի թել № 40, ասեղ №№ 6 և 7. բարձի երեսի համար—դամեստիկ կամ կոշտ մաղեպալամ, համապատասխան ասեղ և կոճի թել:

## Գ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Գուլպա գործելը 10 դաս, կար 50 դաս:

Գուլպայի ներքին մասը կամ թաթը:—1. Կրունկ. 2. Կրունկի պակասեցնելը. 3. Նետիկ (стрѣлка). 4. Ուղիղ մասը. 5. Գուլպայի քիթը:

Գիցքի օրինակներ.—1. Թեք գիցք. 2. Թեք ամրակար (черезъ край). 3. Հասարակ խաչկար. 4. Ցօղունակար (стебельчатный).

Կարերի օրինակներ.—1. Վրակար (Рубецъ). 2. Ամրակար (Черезъ край). 3. Փոթկարը (Նաւոճը) գօտիին միացրած, շուրջը ծալքեր դարսած. 4. Թափանցիկ

կամ ծակոտկէն դարձկար (ажурная строчка). 5. Ժապաւէն վրակարելը զանազան ձևով։

Գործադրութիւն.—1. Թաշկինակ՝ վրան խաչկարով նշանագիր։ 2. Գոգնոց։

Լրացուցիչ զբաղմունք.—Սրբիչ (դաստառակ) թափանցիկ դարձկարով և ցօղունակարով։

Նիւթը—Կանվա—կօնգրէս. Հարթակարի բաց կապոյտ թել № 20. Մադեպալամ. Կոճի թել № 50· Ասեղ № 8.

## Դ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Գիցքի օրինակներ. Հանգոյցի կար (петельный шовъ) 2. Ճիւղակար (елочка).

Կարերի օրինակներ—1. Կրկնակի վրակար. 2. Քառակուսի կտոր կիսաշրջան կտրուածքով, վրան կարած թեք բիէ և շուրջը ժանեակ (հաշեայ) (кружева). 3. Քառակուսի կտոր՝ վրան կարած սովորական և թելէ կոճկամայր։

Գործադրութիւն. 1. Կանանց շապիկ՝ ուսին կոճակ և կոճկամայր (ցանկութեան համեմատ)։

Լրացուցիչ զբաղմունք.—1. Զարդկար (мережка). 2. Ծիւղակար 3. Ժանեակ միացնել շապիկը զարդարելու համար։

Նիւթը.—Դամեստիկ. — Կանվա-կօնգրէս և բաց կապոյտ թել № 20. Մադեպալամ և սպիտակ կոճի թել № 60. Ասեղ № 8. 9.

## Ե. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Ձև—1. Շապիկ ձևելը 2. Վարտիք ձևելը։

Կարկատան.—1. Կարկատան՝ միացրած կրկնակի վրակարով. 2. Կարկատան՝ միացրած ամրակարով. 3.

Կարկատան միացրած խաչաձև կարով (расшивочный шовъ)։

Կարերի օրինակներ։—Դուրս կտրուածքին շերտ կըպցնելը (2 տես). 2. Նախապատրաստական օրինակ վարտիք կարելու համար։

Գործադրութիւն—1. Կանանց վարտիք։

Նիւթը.—I տեսակ կարկատանի համար—մադեպոլամ. II տեսակի համար բրդէ կտոր. III տեսակի համար մահուդ կամ ֆլանել։

Լրացուցիչ զբաղմունք.— Ընդհանուր հասկացողութիւն ղայմնագի գործի մասին (тамбурное вязаніе).

## Զ. ԴԱՍԱՐԱՆ (շաբաթական 2 դաս)

Ձեւ.—1. Շրջազգեստ ձևելը. 2. Կոֆտա ձևելը։

Լցւածք.—(штопка).

1. Քաթանի լցւածք կօնգրէս կանվայի վրայ։ 2. Քաթանի լցւածք գուլբայի կտորի վրայ (կտորը պէտք է լինի քառակուսի)։

Կարերի օրինակներ. 1. Ցէստօններ. 2. Կրկնակի ծալք (бантовая складка) կոճակով և կոճկամայրով։

Գործադրութիւն.—Կանանց ամենահասարակ հագուստ։—1. Զորս կտորից բաղկացած շրջազգեստ ձևել և կարել։ 2. Անգլիական բլուզ ձևել և կարել կոֆտայի օրինակով։

Նիւթը.—Լցւածքի համար—կօնգրէս-կանվա և բաց կապոյտ թել № 20.

Զգեստի համար—հասարակ չիթ։

# XV. ՄԱՐՄՆԱՄԱՐԶՈՒԹԻՒՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ

Մարմնամարզութիւնը, որ մեր դպրոցների ծրագրներից միշտ դուրս էր մնացած եղել, պէտք է որ գէթ ներկայումս վերջապէս բռնէ իրեն վայել տեղը։ Այս առարկան մեծ նշանակութիւն ունի մանուկների ոչ միայն մարմնաւոր, այլ և հոգեկան կեանքի համար։ Ցանցանք կը լինի այսուհետև էլ անտես անել մարդկային էութեան հիմքը՝ մարմնի կանոնաւոր գործունէութեան էական պայմանները։ Մարմնամարզութիւնը մարմնին տալիս է ոյժ ու տոկունութիւն, առանց որոնց անհնարին է հոգեկան կեանքից յարատև ու արդիւնաւոր գործունէութիւն սպասելը։ Կեանքի ժամանակակից բարդ պահանջներին բաւարարութիւն տալու համար բազմակողմանի ծրագիրներ են կազմւում, որոնք մանուկների մտքից աւելի մեծ լարում կը պահանջեն։ Անհնարին է առանց մարմնի կանոնաւոր նիւթափոխութեան յաղթահարել այս դժւարութեանց նոյն իսկ լաւագոյն ծրագրներով ու մեթօդներով։ Իսկ կանոնաւոր նիւթափոխութեան, սպառւած ոյժերի վերանորոգման և դեռահաս մարմնի աճեցման էական պայմանն է բացի բաւարար սննդառութիւնը՝ մաքուր օդի մէջ բազմակողմանի շարժողութիւնը, որ կազմակերպւում է մարմնամարզութեան սիստեմատիքական դասերով։

Այս ֆիզիքական վարժութիւնները առանձին բարոյական նշանակութիւն էլ ունին. նրանք նպաստում են կամքի զարգացման։ Մարմնամարզը սովորում է իւր հոգեկան ու մարմնաւոր ոյժերը առնչութեան մէջ պահել՝ նրանց կենտրոնացնելով պահանջած վայրկեանին

որոշ ու ճիշտ շարժումներ առաջացնելու համար։ Մարմնամարզութիւնը զարգացնում է մանուկների մեջ նաև արիասրտութիւն, ինքնավստահութիւն, ներդաշնակ շարժումների հմտութիւն, որ նաև էսթետիքական տեսակէտից գնահատելի ունակութիւն է։ Մարմնամարզութիւնը նաև ուրախութեան աղբիւր է մանկական կեանքում. առոյգ ու զւարթ մանուկը թէ մարմնով և թէ հոգով առողջ կը լինի։ Մարմնամարզարանում հոգին այնքան թեթևութիւն է զգում, որ կարծես թէ բոլորովին ազատւում է մարմնի նիւթական բեռից։

Մարմնամարզութիւնը օրիորդներին էլ ոչ միայն կարևոր է, այլ և աւելի անհրաժեշտ, քանի որ նրանք ոչ ցատկում, ոչ մագլցում են տղաների պէս և ոչ էլ սրանց չափ մարմնամարզական խաղեր ունին։ Մեր օրիորդների նստական կեանքի հետևանքը լինում է մկանների ու ջղերի ընդհանուր թուլութիւն, տեսակ—տեսակ ջղային հիւանդութիւններ, գունատութիւն, աճման խանգարում, կրծքի նւազ զարգացում և ողնաշարի ծռութիւն։ 7—15 տարեկան աղջիկների մարմնամարզութիւնը սոցիալական մեծ նշանակութիւն ունի. միայն անարգել զարգացած մարմինը կարող է առողջ սերունդ առաջացնել։

Մարմնամարզական վարժութիւնները վերածւում են երեք տեսակ շրջանների. ա) ընդհանուր վարժութիւնների, բ) գործիքներով վարժութիւնների և գ) մարմնամարզական խաղերի։ Ընդհանուր վարժութիւնների շրջանը մտնում են 1. ազատ վարժութիւնները, 2. ձողով, ցուպով և ծանրոցով վարժութիւնները, 3. քայլընթացքը և 4. շարքով վարժութիւնները։ Ազատ վարժութիւնները կատարւում են անփոփոխ շարքերում կանգնածների իրանը, ձեռքերը, ոտքերը, գլուխը բազմակողմանի շարժումների մեջ դնելով։ 11—12 տարե-

համար ընդհանուր մարմնամարզարաններ շինելը։ Առանց սրանց հնարաւոր կը լինի ազատ օդի մէջ պարապեցնել միայն լաւ կամ տանելի եղանակներին։ Ուր որ կահեր (մարմնամարզական սարքեր) շինելու միջոցները դեռ պակասելու են, ազատ և այլ վարժութեանց համար աշակերտներին կարելի է 2—3 խմբակների վերածելով օրական 25 րոպէ պարապեցնել բակում։ Մարմնամարզարան ունեցող դպրոցները ամեն մի դասարանի պէտք է յատկացնեն շաբաթական 2 ժամ։ Կարելի է 2—3 դասարաններից խմբակներ կազմել նաև այս դէպքում։

## ԾՐԱԳԻՐ

### I. Ազատ վարժութիւններ.

1. Կանգնելը և կանգնած տեղը ազատ վարժութիւններ բազուկների, գլխի, սրունքների։
2. Քայլընթացք զանազան կերպերով.
3. Ոստնել—ցատկելը.
4. Վազելը.
5. Մարմինը իւր առանցքի շուրջը պտտցնելը։

### II. Շարքով վարժութիւններ.

1. Պարզ շարքը. 2. Բարդ շարքը. 3. Ազատ և շարքով վարժութեանց միութիւնից առաջացած շըրջապարեր, միջանցուկ բազմապիսի քայլընթացքներ։

### III. Գործիքներով վարժութիւններ.

#### ա. Ձեռքի գործիքներով.

1. ա. Ցուպերով վարժութիւններ. բ. Ծանրոցներով վարժութիւններ. գ. Ձողերով վարժութիւններ։

2. Գնդակներ, քարեր, կոճղներ և այլն նետելու վարժութիւններ.

3. Ձեռքերում բռնած կարճ թոկի վրայով թռչկոտելու վարժութիւններ.

4. Բռնելու, բարձրացնելու, տանելու, քաշելու և հրելու վաժութիւններ.

## բ. Կախերի (սարք) միջոցով վարժութիւններ.

1. Մի ծայրը ամրացրած, միւսը ձեռքով պտտացրած թոկի վրայից, տակից ցատկելը։

2. Հորիզոնական դիրքով թոկի վրայից ցատկելը։

3. Արկղի վրայ և վրայով ցատկելը.

4. Ձիու վրայ և վրայով ցատկելը։

5. Վարժութիւններ զուգահեռական ձողերի վրայ.

6. Վարժութիւններ հաստատուն հորիզոնական ձողի վրայ.

7. Վարժութիւններ հորիզոնական, թեք և ուղղահայեաց սանդուղների վրայ։

8. Վարժութիւններ հանգուցաւոր և անհանգոյց թոկի վրայ։

9. Վարժութիւններ ուղղահայեաց ձողի վրայ.

10. Վարժութիւններ կախովի ճօճացող օղակների միջոցով.

11. Վարժութիւններ ճօճացող ձողի միջոցով։

## IV. Մասնամարզական խաղեր.

1. Մուկ ու կատու։ 2. Հաւ—հաւ։ 3. Երկու ու երեք։ 4. Գերի։ 5. Շրջան։ 6. Թագաւոր։ 7. «Ղազախ—թօփի»։

---

## ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Գ. ԳԱԼՍՏԵԱՆԻ

### «ԳՈՒՏՏԵՆԲԵՐԳ-»-ի։

1. Պոմպէյի վերջին օրերը, Թ. Յ. Միրզայեանի 1 50 կ.
2. Ասպետ. Վ. Փափազեանի . . 15 կ.
3. Կեանքը ծովերի խորքում Լունկեվիչի, Թարգմ. Սա. Մալխասեանի . . 30 կ.
4. Տրիլբի, դրամա 4 ար., Թ. Լ. Մելիք-Ադամ. 25 կ.
5. Եալ-աստ, փոփ. 1 արար. Յակ. Ղազարեանի. 25 կ.
6. Դարվինիզմ, Ս. Բայազեանի. . . 50 կ.
7. Ազնիւ գող, Ֆ. Մ. Դոստոեվսկու, Թ. Ն. Զ. 10 կ.
8. Ինքնավարութիւն և Զեմստվօ, Բէլօկօնսկու. Թարգմ. Կ. Ջալալեանի . . . 15 կ.
9. Տնտեսագիտական զրոյցներ, Կարիշեւ. Թարգմ. Կ. Ջալալեանի . . . 40 կ.
10. Къ введенію на Кавказѣ Земскаго Самоуправленія, Кн. Г. М. уманова. 20 .
11. Քերականութիւն մայրենի լեզուի, Ա. Բ. և Գ. մաս. Սա. Պալասանեանի. . 75 կ.
12. Ընդհանուր պատմ. Հին-Դար, Վինոգրադովի, Թարգմ. Խաժակի. . . 1—
13. Եւրոպա և Հայաստան, Ամֆիտէատրովի Թարգմ. Ա. Մխիթարեանցի . . 10 կ.
14. Փուչ զաւակ, դրամա 5 գործ. Գ. Ղարաջեանի. . . . . . 50 կ.
15. Արիւնի աւետարանը, Թարգմ. Տ. Զաւէնի 25 կ.
16. Գծագրութեան օրինակներ, Գ. Լևոնեանի Ա. մաս. . . . . . 20 կ.